# ՎՐԱՆԻ ՏԱԿ

ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ

Վրանի տա՛կ, վրանի տա՛կ,
Վրադ՝ երկինքը կապուտակ,
Շուրջդ՝ դաշտե՛ր, լեռ ու անտառ
Ու գետակի երգը անբառ:

Ինչքա՛ն լավ է տղաներով
Պառկել թախտին ու գիշերով
Լռել, լռե՛լ վրանի տակ
Ու երազել՝ աչքերը փակ:

Մոտից զգալ բույրը հողի,
Մեծ անտառի շունչը զգալ,
Դառնալ մասնիկը լեռների
Ու լեռան պես ճակատը տալ

Ճայթող շանթին, անսանձ քամուն,
Անձրևների՛ն ամպաորոտ,
Որ առվակ են հետո դառնում
Ու կարկաչու՛մ վրանիդ մոտ:

Հետո աստղե՛ր՝ դռան ճեղքից,
Հետո՝ լուսնի դեմքը սիրուն,
Ու քնում ես խոր ու հանգիստ,
Կարծես սուզվում ես աստղերում:

Վրանի տա՛կ, վրանի տա՛կ,
Վրադ՝ երկինքը կապուտակ,
Շուրջդ՝ դաշտե՛ր, լեռ ու անտառ,
Առանց վրան էլ ի՞նչ ճամբար:

Նկ. ՀՐԱՅՐ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

# Ողջույն, ճամբար

ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Ամառն արդեն հազար բույրով,
Իր գույների հրապույրով
Մեզ կանչում է դաշտ ու ձորից:
Մնա՛ք բարո՛վ, մնա՛ք բարո՛վ,
Հազար ու մի ճանապարհով
Մենք ճամբար ենք գնում նորից:

Եվ հրաժեշտ տալով շոգին՝
Ողջունում ենք մենք խնդագին
Հանդին, սարին, զով արոտին:
Առվակները փրփուր հանող
Արձագանք են տալիս ձայնով
Մայր բնության մեր կարոտին:

Թող հավքերը երգով թռվեն,
Ծղրիդները թող թոթովեն,
Եվ անտառը թող մեզ գերի:
Լանջերն ի վեր երբ բարձրանանք,
Նրանց ձայնով թող քաղցրանա
Զինջ կարկաչը մեր երգերի:

Համբույր կառնենք արեգակից,
Հմայք ու բույր՝ ծառ ու ծաղկից
Եվ դաշտերից մեր ոսկեզօծ:
Որպես սրտի եռանդ և ուժ
Ամռան բույրն ու արևն անուշ
Մենք կբերենք մեզ հետ դպրոց:

ՀՈՒԼԻՍ
№ 7 1963 Թ.



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
35-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ




ՆՈՐԱՅՐ ԱԴԱԼՅԱՆ

Տեսարանը ներկայացնում է ամենասովորականից սովորական մի բակ:

Գործողությունը կատարվում է ատոմային ռումբի ստեղծումից մինչև այսօրը ընկած ժամանակաշրջանում:

Հանձինս Աշոտի, Ռաֆիկի, Անահիտի, Արմենի և Համիկի՝ մասնակցում են աշխարհի բոլոր երեխաները:

Անահիտը գնդակ է գցում-բռնում: Աշոտը ճոճում է սանդուղքից կախված ոտքերը և անվերջ հաշվում մեկից մինչև տասը: Համիկը երկրորդ հարկի պատշգամբից օճառի պղպջակներ է թողնում, որոնք դողդողալով իջնում են գետնին: Արմենը կանգնել է բակի ճիշտ մեջտեղը և խորոված եգիպտացորեն է անփութորեն կրծում: Ռաֆիկը մեջքով անշարժ գրքնել է էլեկտրասյանը: Նա այնքան լուրջ դեմք է ընդունել, կարծես իրենից ավելի զբաղված մարդ ամբողջ քաղաքում չկա:

Գնդակը Անահիտի ձեռքից վայր է ընկնում և դանդաղ գլորվելով հասնում Արմենին: Տղան աջ ոտքով այն տեղափոխում է ձախ ոտքի վրա, մի քանի անգամ խաղացնում և գցում է ուղիղ աղջկա ափերի մեջ: Ափերը չեն հասցնում իրար մոտենալ, և գնդակը թրթռալով գնում կանգ է առնում պատերից մեկի տակ:

*ԱՆԱՀԻՏ.— Ավելի քաղաքավարի չէ՞ր կարելի:*

*ԱՐՄԵՆ.— Այսինքն, ինչպե՞ս:*

*ԱՆԱՀԻՏ.— Հարկավոր էր կռանալ, զգուշությամբ բարձրացնել և ասել. «Խնդրում եմ վերցրու, Աննի»:*

*ԱՐՄԵՆ.— Չէ՛ մի պոզե՞ր:*

*ԱՆԱՀԻՏ.— Ի՞նչ ասացիր: Աշո՛տ, Համի՛կ, Ռաֆի՛կ, լսեցի՞ք ինչ ասաց: (Լռություն): Ծու՛յլ, անպե՛տք, փնթի՛: Դե գնա՛:*

*ԱՐՄԵՆ.— Չե՛մ գնում:*

*ԱՆԱՀԻՏ.— Քեզնից մարդ դուրս չի գա:*

*ԱՐՄԵՆ.— Ես արդեն ֆուտբոլիստ եմ:*

*ԱՆԱՀԻՏ.— Դու ֆուտբոլիստ չես:*

*ԱՐՄԵՆ.—* (Դադարում է եգիպտացորեն կրծել) *Ի՞նչ...*

*ԱՆԱՀԻՏ.— Դու ֆուտբոլիստ չես, ֆուտբոլիստ չե՛ս, չե՛ս չե՛ս, չե՛ս... Դե գնա՛:*

*ԱՐՄԵՆ.—* (Կտրուկ շուռ է գալիս: Մայկայի վրա թանաքով գրված է «9» թիվը) *Տեսա՞ր:*

*ԱՆԱՀԻՏ.— Հետո ի՞նչ: Մեր դռան վրա էլ է գրված «9»: Ուրեմն մեր դուռը ֆուտբոլի՞ստ է:*

*ԱՐՄԵՆ.—* (Ցատկոտում է տեղում) *Տեսա՞ր:*

*ԱՆԱՀԻՏ.— Լարախաղացն էլ է այդպես անում: Ուրեմն լարախաղացը ֆուտբոլի՞ստ է:*

*ԱՐՄԵՆ.—* (Կատաղի հարձակվում է երևակայական հակառակորդի վրա, խարուսիկ մի շարժումով խլում է երևակայական գնդակը, շեշտակի հարվածում երևակայական դարպասին և փայլում երևակայական հաջողությունից) *Հիմա՞ տեսա՞ր:*

*ԱՆԱՀԻՏ.— Միևնույն է, դու ֆուտբոլիստ չես:*

*ԱՐՄԵՆ.— Աշո՛տ, ես ֆուտբոլիստ չե՞մ:*

*ԱՇՈՏ.—* (Հաշվում է): *Մե՛կ, երկու՛, երե՛ք, չորս...*

*ԱՐՄԵՆ.— Համի՛կ, ես ֆուտբոլիստ չե՞մ:*

*ՀԱՄԻԿ.—* (Մի մեծ պղպջակ է կախում օդում և ժպտում է երջանկությունից):

*ԱՐՄԵՆ.— Ռաֆի՛կ, ես ֆուտբոլիստ չե՞մ:*

*ՌԱՖԻԿ.—* (Անբարբ նայում է ինչ-որ տեղ, ոչ այն

է պատշգամբում կախված լվացքին, ոչ այն է կապույտ երկնքին):

*ԱՐՄԵՆ.*— (Անահիտին) *Գոնե հիմա համոզվե՞ցիր, որ ես ֆուտբոլիստ եմ։*

*ԱՆԱՀԻՏ.*— *Չե՛ս խաբի։*

Արմենը, կարծես ստադիոնում, մարզումներ է անում: Նա թռչում է, վազում, կռանում, տարածում ձեռքերը, աջ ու ձախ շրջում գլուխը, դուրս ցցում կուրծքը, մարմնով ոլորվում, խորը շնչում ու արտաշնչում, խարույկի շարժումներ անում, վերջապես վերև է ցցում մինչև վերջ չկերած եգիպտացորենը և ընկերների անտարբերությունից վիրավորված՝ ուժգին հարվածում ոտքով: Եգիպտացորենը պտտվելով բարձրանում է երկինք և գնում կորչում իրար վրա կառուցած կտուրների մեջ:

*ՀԱՍՄԻԿ.*— *Եկեք որևէ բան խաղանք։*

*ԱՆԱՀԻՏ.*— *Ի՞նչ խաղանք։ Եկեք գնդակ գցենք-բռնենք։*

*ԱՐՄԵՆ.*— *Ի՞նչ մեծ բան կա գնդակ գցելու մեջ, Ֆուտբոլ խաղանք։ Կենտրոնական հարձակվողը ես եմ։*

*ՀԱՍՄԻԿ.*— *Ֆուտբոլ չեմ սիրում։ Եկեք պղպջակ թողնենք։ Ով որ ամենամեծ պղպջակը թողնի, նա էլ կհաղթի։*

*ԱՇՈՏ.*— *Պղպջակը դատարկ բան է։ Բարձրացեք սանդուղքի վրա և ճոճեք ոտքերդ։ Բոլորդ էլ կտեղավորվեք։*

*ՌԱՖԻԿ.*— *Անհետաքրքիր է։*

*ԱՇՈՏ.*— *Հասմի՛կ, Արմե՛ն, Անահի՛տ, մի՛ լսեք նրան։ Նա ինձ նախանձում է։ Նա միշտ մտածում է այնպիսի մի բան անել, որ աշխարհով մեկ խայտառակվեմ։ Երեկ հեծանիվիս անիվների առաջ սարի չափ քարեր դրեց, բայց որովհետև ես աչքերս փակ հաշվում եմ մեկից մինչև տասը, կտրուկ շրջադարձ կատարեցի և դուրս եկա հարթ ճանապարհ։ Մի՞թե ոտքերը ճոճելով մեկից մինչև տասը հաշվելը հետաքրքիր չէ։*

*ՌԱՖԻԿ.*— *Ա՛յ, եկեք կանգնեք ինձ մոտ և նայեք երկնքին։ Ինչ ասեք, որ չեք տեսնի. է՛լ ձի և ավտոմեքենա, է՛լ վագր և ծխնելույզով տնակ, է՛լ ծիծեռնակ և պատերազմ, է՛լ ամեն ինչ։*

*ԱՐՄԵՆ.*— *Պատերազմ խաղանք։*

*ԱՆԱՀԻՏ.*— *Պատերազմը հետաքրքիր է։*

*ՀԱՍՄԻԿ.*— *Պատերազմից լավ բան չկա։*

*ԱՆԱՀԻՏ.*— *Պատերազմից լավը խաղաղությունն է, հայրիկս է ասում։*

*ՀԱՍՄԻԿ.*— *Խաղաղություն ինչպե՞ս խաղանք։*

*ԱՆԱՀԻՏ.*— *Բան չեմ ասում, պատերազմ խաղանք։*

*ԱՐՄԵՆ.*— *Ես գեներալ եմ։*

*ՀԱՍՄԻԿ.*— *Ես բժիշկ եմ։*

*ԱՇՈՏ.*— *Ես օդաչու եմ։*

*ԱՆԱՀԻՏ.*— *Իսկ ես ի՞նչ եմ։*

*ՀԱՍՄԻԿ.*— *Դու հրացան ես։*

*ԱՐՄԵՆ.*— *Չէ՛, դու հեռադիտակ ես։ Ինչ ուզես կտեսնես։*

*ԱՇՈՏ.*— *Հետախույզը ավելի լավ է, շուտ կմեռնես։ Այսինքն՝ քո գործն է, ուզում ես հեռադիտակ եղիր։*

*ԱՆԱՀԻՏ.*— *Ես տանկ եմ, տանկ։*

*ԱՇՈՏ.*— (Հորիզոնական տարածում է ձեռքերը և նախ դանդաղ, իսկ հետո արագ՝ շրջանաձև վազում) *Ու ու՜ ու՜ ու՜...*

*ԱՐՄԵՆ.*— (Զգվում է, խոժոռում դեմքը և վեր ցցում գլուխը) *Քայլով... առաջ...* (Սկսում է քայլել) *Մեկ, երկու, երեք...*

*ԱՆԱՀԻՏ.*— (Բռունցքները պտտում է միմյանց շուրջը և ծանրորեն պոկվում տեղից) *Դը՜ռ... բում, բում, բու՜մ... Դը՜ռ... բում, բու՜մ... Դը՜ռ... բու՜մ... Դը՜ռ... բու՜մ, բու՜մ, բու՜մ... բու՜մ... փա՜խ...* (բռնում է կողքը և երեսնիվայր ընկնում):



*ՀԱՍՄԻԿ.*— (Ծնրադրում է Անահիտի մոտ) *Մեռա՞ր...*

*ԱՆԱՀԻՏ.*— *Համարյա մեռա։*

*ՀԱՍՄԻԿ.*— *Հիմա կլավացնեմ։*

*ԱՆԱՀԻՏ.*— *Մի՛ չարչարվի, արդեն մեռա։*

*ՀԱՍՄԻԿ.*— *Չե՛ս մեռել։*

*ԱՆԱՀԻՏ.*— *Մեռել եմ։*

*ՀԱՍՄԻԿ.*— *Որ ասում եմ՝ չես մեռել, ուրեմն չես մեռել։ Բժիշկը ե՞ս եմ, թե՞ դու։* (Թաշկինակով կապում է Անահիտի ճակատը) *Տեսա՞ր։ Վե՛ր կաց։*

Աշոտը շարունակում է շրջանաձև վազել, Արմենը՝

քայլել, Անահիտը՝ պտտել բռունցքները, Համիկը՝ անհանգիստ իր շուրջը նայել: Նուտով այնքան են ոգևորված, որ նրանցից յուրաքանչյուրը միաժամանակ դառնում է զինվոր, բժիշկ, օդաչու և տանկ: Իսկ ավելի ուշ, ոչ ոք չի կարող գուշակել, թե ով հատկապես ինչ է:

*ՌԱՖԻԿ.— Առանց ատոմային ռումբի ի՞նչ պատերազմ։*

Բոլորը շնչակտուր կանգ են առնում:

*ԱՐՄԵՆ.— Ի՞նչ ասացիր։*

*ԱՇՈՏ.— Բա՞ն ասացիր։*

*ՌԱՖԻԿ.— Ասում եմ առանց ատոմային ռումբի պատերազմ չի լինի։*

Նախ զարմացած, հետո հարցական, վերջում հիասթափված նայում են մեկմեկու: Թեև առաջին անգամն են լըսում այդ անունը, բայց կարծում են, որ հազարերորդ անգամն են լսում, և խաղի մեջ թույլ են տվել շատ մեծ սխալ:



ԱՐՄԵՆ. — (Վախենում է, որ մեկ ուրիշը իրենից հանկարծ առաջ կանգնի) *Ատոմային ռումբը ե՛ս եմ։*

*ԱՆԱՀԻՏ.— Ամեն ինչ ուզում ես դու լինել։ Ատոմային ռումբը ե՛ս եմ, խնդրում եմ։ Գնդակս կտամ կխաղաս։*

*ԱՐՄԵՆ.— Չե՛մ խաղի։ Ատոմային ռումբը ե՛ս եմ։*

*ՌԱՖԻԿ.— Դու ի՞նչ գիտես ատոմային ռումբի գինը։ Ատոմային ռումբը ե՛ս եմ։*

*ԱՇՈՏ.— Եթե գինը գիտես, ուրեմն ատոմային ռումբը դու՞ ես։*

*ՌԱՖԻԿ.— Այո՛, ե՛ս եմ։*

*ԱՇՈՏ.— Ո՛չ, ե՛ս եմ։*

*ՌԱՖԻԿ.— Ասում եմ ե՛ս եմ, թե չէ...*

*ԱՇՈՏ.— Թե չէ ի՞նչ...*

Երերվում են աջ ու ձախ, բայց մնում են տեղներում կանգնած:

*ՀԱՄԻԿ.— Ես ատոմային ռումբի գինը գիտեմ։*

*ԱՆԱՀԻՏ.— Ի՞նչ արժի։*

*ՀԱՄԻԿ.— Թանկ արժի։*

*ԱՆԱՀԻՏ.— Ուրեմն ատոմային ռումբը դու՞ ես։*

*ՀԱՄԻԿ.— Այո՛։ Բայց եթե ուզում եք, վիճակ գցենք։*

*ԱՇՈՏ.— Ատոմային ռումբը ես կլինեմ։*

*ՌԱՖԻԿ.— Ատոմային ռումբը ես կլինեմ, ա՛յ, կտեսնեք։*

Կանգնում են շրջանաձև և հուզված սպասում:

ԱՐՄԵՆ.— (Վանկարկում է) *Ես, դու, նա, նա, սև սա-տա-նա, պա-տի տա-կին չո-րա...* (Տեսնելով վիճակը Անահիտինն է, ցուցամատը արագ ետ է քաշում) *Թո՛ւ, թո՛ւ, թո՛ւ... նորից։*

ԱՆԱՀԻՏ.— (Ոտքերով դոփում է գետինը և լացակումած գոռում) *Անպե՛տք, ծու՛յլ, փնթի՛... Ատոմային ռումբը ե՞ս եմ... հիմա չեմ խա-ղա՞...*

*ՌԱՖԻԿ.— Նա ասաց թու՛, թու՛, թու՛։*

*ԱՆԱՀԻՏ.— Թող չասեր։*

*ԱՇՈՏ.— Ե՛ս եմ վիճակ գցում։* (Արմենին) *Քիթդ կկտրեմ։*

*ԱՐՄԵՆ.— Փախի՛...*

ԱՇՈՏ.— *Ե՛ս, դու, նա, նա, սև սա-տա-նա, պա-տի տա-կին չո...* (Դադար: Մտքում հաշվում է: Շփոթված) *րա... նա-նա-նա։* (Բռունցքը ամուր սեղմում է կրծքին) *Ատոմային ռումբը ե՛ս եմ։*

ՄՆԱՑԱԾՆԵՐԸ. — (Համարյա միաբերան) *Թու՛, թու՛, թու՛, թու՛...*

ՌԱՖԻԿ. — (Աշոտին) *Ատամներդ կջարդեմ։ Նա, նա, նա՞։*

ԱՐՄԵՆ. — (Նայում է շուրջը և հասկանում, որ չափավոր հաշվելու դեպքում վիճակը իրենն էր) *Ատոմային ռումբը ե՛ս էի...* (Հարձակվում է Աշոտի վրա):

ՌԱՖԻԿ.— *Անջատվեք...* (Փորձում է կռվողներին բաժանել):

*ԱՇՈՏ.— Թո՞ղ...*

*ԱՐՄԵՆ.— Թո՛ղ, ասում եմ։*

Անահիտը ուրախությունից ցատկոտում է:

*ՀԱՄԻԿ.— Գոնե ատոմային ռումբից ամաչեք։*

ՌԱՖԻԿ.— (Կանգնում է Արմենի և Աշոտի մեջտեղը) *Եթե մեկ էլ կռվեք, չգիտեմ ինչ կանեմ...*

ԱՇՈՏ.— (Արմենին լեզու է ցույց տալիս):

ԱՐՄԵՆ.— (Աշոտի վրա բռունցք է թափահարում):

ՌԱՖԻԿ.— *Ես, դու* (բոլորը զգաստանում են) *նա, նա, սև սա-տա-նա, պա-տի տա-կին...* (Զգում է, որ վիճակը իրենը չի և Աշոտինը կամ Համիկինն է) *չորանա...* (Վախեցած բարձրացնում է ձեռքերը): *Ես չորացա... Ատոմային ռումբը ես եմ...*

Մի պահ ոչ ոք, այդ թվում և Ռաֆիկը, չի գիտակցում, թե ինչպիսի կեղծիք գործվեց: Այնպես օտարոտի են նայում իրար, կարծես առաջին անգամն են հանդիպում:

ԱՐՄԵՆ.— (Անսպասելի պայծառանում է) *Թու՛, թու՛, թու՛, թու՛... Նորից...*

Ուրախությունից իրար հրմշտում են: Ոչ ոք չըգիտե և չի ուզում իմանալ թուն կեղծիքը: Կարևոր

է, որ ինչ որ-բան կեղծվեց, և վիճակահանությունը պետք է շարունակվի:

ԱՐՄԵՆ.— *Ես, դու, նա...*

ՀԱՄՄԻԿ.— *Դու արդեն հաշվել ես... ես, դու, նա, նա...*

ԱՆԱՀԻՏ.— *Ես էլ չեմ հաշվել: Ես, դու, նա...*

ՀԱՄՄԻԿ.— *Ի՞նչ անքաղաքավարին ես, դու, նա, նա, սև սա-տա-նա, պա-տի տա-կին, չո-քա...*

Բոլորը տեսնում են, որ վիճակը իրավացիորեն Համմիկինն է, և հուսահատ նայում են նրա վրա: Համմիկը դժվարությամբ դուրս է պրծնում ընկերների օղակից և փախչում: Մյուսները կրնկակոխ հետապնդում են նրան: Խումբը, ըստ երևույթին, ոտքի տակ է տալիս ամբողջ թաղամասը և ծանրաշունչ վերադառնում բակ: Համմիկը ամեն կերպ աշխատում է գոնե մի վայրկյան առանձին մնալ և արտասանել երջանկաբեր վերջնավանկը, բայց այդ նրան ոչ մի կերպ չի հաջողվում:

ԱՐՄԵՆ.— *Ատոմային ռումբը ե՛ս եմ:*

ԱՆԱՀԻՏ.— *Ատոմային ռումբը ե՛ս եմ:*

ԱՇՈՏ.— *Ատոմային ռումբը ե՛ս եմ:*

ՌԱՖԻԿ.— *Ատոմային ռումբը ե՛ս եմ:*

Վերջապես կանգ են առնում և լռում:

ՀԱՄՄԻԿ.— (Մեծ ճիգ է անում, որպեսզի լաց չլինի) *Ատոմային ռումբը դուք չեք, ե՛ս եմ...*

ԱՇՈՏ.— *Բոլորս էլ ատոմային ռումբ ենք:*

Անսպասելի ելքից ոգևորված՝ նորից սկսում են գոռալ-գոչել:

ԱՐՄԵՆ.— (Ցնծությամբ) *Ատոմային ռումբը ե՛ս եմ, դու՛ ես, նա է, բոլորս ենք...*

ՌԱՖԻԿ.— *Կեցցե ատոմային ռումբը... Ուռա՜...*

ԲՈԼՈՐԸ.— *Ուռա՜... Ուռա՜... Ուռա՜...*

Աստիճանաբար հանդարտվում են: Յուրաքանչյուրը լուռ աշխատում է այդ հավասարության մեջ իր համար որևէ առավելություն գտնել: Ամեն մեկը ուզում է համոզվել, որ ինքը ուրիշ ատոմային ռումբ է: Շուտով իրար հետևից կեցվածք են ընդունում և հպարտությունից փքվում:

ԱՆԱՀԻՏ.— *Ատոմային ռումբը ի՞նչ է անում:*

ԱՇՈՏ.— *Չգիտի ատոմային ռումբը ինչ է անում և ատոմային է դարձել, սրա՛ն նայեք...*

ԱՐՄԵՆ.— *Ատոմային ռումբը քայլում է:* (Սկսում է քայլել) *Մե՛կ, երե՛ք, երկու՛, հի՛նգ... Ա՛ջ-ձա՛խ, ա՛ջ-ձա՛խ... Քայլո՜վ առաջ...*

ՌԱՖԻԿ.— (Ծիծաղելով) *Կարծում է ատոմային ռումբը գեներալ է:*

ԱՇՈՏ.— *Ատոմային ռումբը թռչում է...* (Հորիզոնական տարածում է ձեռքերը և նետվում առաջ) *Ու՜ ու՜ ու՜...*

ՀԱՄՄԻԿ.— *Ատոմային ռումբը ուրիշ բան է անում:*

ԱՆԱՀԻՏ.— *Ի՞նչ է անում:*

ՀԱՄՄԻԿ.— *Քո ի՞նչ գործն է:*

ՌԱՖԻԿ.— *Ատոմային ռումբը ո՛չ թռչում է, ո՛չ էլ քայլում է...* (Բոլորը լարվում են) *Չե՛մ ասի...*

ԱՆԱՀԻՏ.— *Խնդրում եմ, ասա...*

ԱՐՄԵՆ.— *Ականջիս կասե՞ս...*

ՀԱՄՄԻԿ.— *Արի գնանք մեր տուն: Այնքան խաղալիք ունե՜մ...*

ԱՆԱՀԻՏ.— *Ես ձի ունեմ, ձի...*



ԱՇՈՏ.— *Հայրիկս նկարազարդ գիրք է առնելու, այսօր է առնելու...*

ԱՐՄԵՆ.— *Գուցե հեծանիվս քշես, հը՞...*

ՌԱՖԻԿ.— *Հավես չունեմ:*

ԱՐՄԵՆ.— *Երկու անվանի է...*

ՌԱՖԻԿ.— *Եթե մեկ անվանի լիներ, դեռ մի կերպ կարելի էր:*

ԱՐՄԵՆ.— *Մեկ անվանի հեծանիվ չունեմ: Գրնդակ ունեմ, լապտեր ունեմ, շաշկի ունեմ, գունավոր ապակուց գնդիկներ ունեմ, ֆոտոապարատ ունեմ, հրացան ունեմ, ամեն ինչ ունեմ, բայց մեկ անվանի հեծանիվ, չգիտեմ ինչու, չունեմ: Իմ լապտերը լուսավորում է ամբողջ փողոցը: Լապտերը փորձիր: Ազնիվ խոսք, շատ լավ լապտեր է:*

ՌԱՖԻԿ.— *Եթե ասեմ, բոլորիդ էլ կասեմ:*

ԱՇՈՏ.— *Բոլորիս ասա:*

ՌԱՖԻԿ.— *Մեր մեջ մնա, հա՜...*

ԱՐՄԵՆ.— (Անհամբեր) *Տե՛ս, մարդու բան չասես:*

ԱՆԱՀԻՏ.— *Ես տեսել եմ, դու տես:*

ՌԱՖԻԿ.— (Շուրջը նայելով բարձրանում կանգնում է սանդուղքի երրորդ աստիճանին), *Ատոմային ռումբը պայթում է... Բո՜մ...* (Ցատկում է ներքև):

ՄՅՈՒՍՆԵՐԸ.— (Թռչկոտելով) *Բու՜մ, բու՜մ, բու՜մ...*

ՌԱՖԻԿ.— (Բռնելով Աշոտի թևը) *Ատոմային ռումբը պայթում է... Հետո ես մեռնում եմ, դու մեռնում ես... Անահիտը մեռնում է, Արմենը մեռնում է, և Համմիկն էլ է մեռնում...*

Բոլորը այնպես են լռել, որ ավելի ուժգին պոռթկան:

ԱՇՈՏ.— *Դե, մեռնենք...* (Վայր է ընկնում):

ՌԱՖԻԿ.— *Իսկականից ենք մեռնելու...*

*ԱՇՈՏ.*— (Վերև է ցատկում) *Ցա՜...*

*ԱՐՄԵՆ.*— *Խաղալանի՞ց...*

*ՌԱՖԻԿ.*— (Շփոթված) *Այո՛...*

*ՀԱՍՄԻԿ.*— *Ի՞նչ գիտես խաղալանից ենք մեռնելու:*

*ՌԱՖԻԿ.*— *Երբ ատոմային ռումբը պայթում է, միայն խաղալանից-խաղալանից են մեռնում: Հայրիկս է ասում:*

*ԱՆԱՀԻՏ.*— *Հայրիկդ որտեղի՞ց գիտի:*

*ՌԱՖԻԿ.*— *Հայրիկս ամբողջ օրը թերթ է կարդում, ամեն ինչ գիտի:*

Բոլորը այնպես են լռել, կարծես այլևս երբեք չեն խոսելու:

*ՌԱՖԻԿ.*— (Երկյուղածությամբ շուրջն է նայում) *Երբ ատոմային ռումբը պայթում է, հայրիկներն էլ են մեռնում, մայրիկներն էլ են մեռնում, տատիկներն էլ են մեռնում... Քույրիկներն էլ են մեռնում...*

Բոլորն այնպես են լռել, կարծես երբեք ոչ մի բառ չեն արտաբերել:

*ՌԱՖԻԿ.*— (Վախեցած) *Կարծեմ բակերն էլ են մեռնում, փողոցներն էլ են մեռնում, շենքերն էլ են մեռնում, ծովերն էլ են մեռնում, սարերն էլ են մեռնում, անտառներն էլ են մեռնում...*

Բոլորը այնպես են լռել, կարծես գոյություն չունեն: Ռաֆիկը վազում բարձրանում է սանդուղքի վրա և սարսափած ճչում.

*Ատոմային ռումբը ես չե՛մ... Ատոմային ռումբը դու՛ ես...*

*ԱՐՄԵՆ.*— *Ե՛ս էլ ատոմային ռումբ չեմ...*

Բոլորը տագնապած, իրար հրելով վազում բարձրանում են սանդուղքի վրա:

*ԱՆԱՀԻՏ.*— *Ես ատոմային ռումբ չեմ...*

*ԱՇՈՏ.*— *Ատոմային ռումբը Հասմիկն է...*

*ԱՐՄԵՆ.*— *Ճիշտ է, Հասմիկն է:*

*ՌԱՖԻԿ.*— *Հիշու՞մ եք, վիճակը նրան ընկավ:*

*ԱՐՄԵՆ.*— *Վիճակը քեզ է ընկել:*

*ԲՈԼՈՐԸ.*— *Ատոմային ռումբը դու՛ ես, ատոմային ռումբը դու՛ ես, ատոմային ռումբը դու՛ ես...*

*ՀԱՍՄԻԿ.*— (Արտասվելով) *Ես չեմ ուզում ատոմային ռումբ լինել:*

(Հեկեկում է):

Աշոտը, Անահիտը, Արմենը, Ռաֆիկը երկար ժամանակ լուռ նայում են Հասմիկին և, բառ երևույթին, նրա հանդեպ սիրով լցվում:

*ԱՇՈՏ.*— *Դու այլևս ատոմային ռումբ չես: Ո՛չ ոք ատոմային ռումբ չի:*

Սանդուղքից մեկ-մեկ ցած են իջնում: Այնպիսի տեսք ունեն, կարծես ինչ-որ մի սարսափելի բանից փախել-ազատվել են:

*ԱՐՄԵՆ.*— (Բարձրացնում է պատի տակ ընկած մոռացված զնդակը և մեկնում Անահիտին) *Խնդրում եմ, վերցրու՛, Անի՛:*

*ԱՆԱՀԻՏ.*— *Եթե ուզում ես՝ գցիր-բռնիր:*

*ԱՐՄԵՆ.*— *Մի ուրիշ անգամ:*

*ԱՇՈՏ.*— *Պատերազմ չխաղանք, տուն-տուն խաղանք: Պատերազմը հետաքրքիր չէ:*

*ՌԱՖԻԿ.*— *Շատ եմ ուզում տուն-տուն խաղալ:*

*ԱՐՄԵՆ.*— *Հայրիկը ես եմ, Աշո՛տ, Ռաֆի՛կ, գուցե դու՞ք եք ուզում հայրիկ լինել:*

*ԱՇՈՏ.*— *Այս անգամ ես քեռին կլինեմ:*

*ՌԱՖԻԿ.*— *Այսօր հայրիկը դու եղիր, վաղը հայրիկը ես կլինեմ: Հիմա ուզում եմ պապիկ լինել:*

*ԱՐՄԵՆ*— *Ազնիվ խո՞սք:*

*ՌԱՖԻԿ.*— *Ազնիվ խոսք:*

*ԱՆԱՀԻՏ.*— *Մայրիկը Հասմիկն է: Նա շատ լավ մայրիկ է լինում:*

*ՀԱՍՄԻԿ.*— *Իսկ դու ի՞նչ ես:*

*ԱՆԱՀԻՏ.*— *Ես քույրիկն եմ:*

*ՀԱՍՄԻԿ.*— *Եթե ուզում ես՝ մայրիկը կիսենք:*

*ԱՆԱՀԻՏ.*— *Կփչանա:*

Ժպտում են, ծիծաղում. միասին էին, ինչ-որ մի պահ կորցրեցին իրար, հիմա հավիտյան միասին են:

*ԱՇՈՏ.*— *Ի՞նչ ենք անելու:*

*ԱՆԱՀԻՏ.*— *Տներ կանգնենք, ծաղիկներ կցանենք, թռչունների համար բներ կպատրաստենք, այնքան գործ կա...*

Ռաֆիկը մոտենում է հանգած խարույկին, ածուխի մի կտոր վերցնում և հանդիպակաց տնակի պատի վրա ծուռումուռ գրում. «Մեր տունը»:

*Նկ. ԷԴՎԱՐԴ ԶԱՔԱՐՅԱՆԻ*



# ՏԵՍՆԵՍ Ե՞ՐԲ ԽԱՂԻՑ ԿՀՈԳՆԻ ԱՐԱՆ

*ՄԱՄԻԿՈՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ*

Արևն հասել էր զենիթին վաղուց
Ու չորս կողմն ասես կրակ էր մաղում,
Կարոտել էին ծառերը բակի
Ջրի զով շնչին մոտիկ առվակի:

Լուռ ու գլխահակ կանգնած ու կարծես
Միտք էին անում այդ խեղճերն այսպես.
«Տեսնես ե՞րբ խաղից կհոգնի Արան,
Դեռ ինչքա՞ն պիտի մեզ թողնի ծարավ»:

Իսկ նա քանի՛ ժամ արդեն այդ տապին
Մեկ գորտ էր փնտրում առվակի ափին,
Մեկ ջուրն էր նետում նավակն իր փայտե,
Մեկ ջրաղաց էր կառուցում այնտեղ:

Հետո, գիտե՞ք, դեռ «վարորդ» էլ դարձավ,
Հենց որ նավակից, ջրից ձանձրացավ,
Գլորանն առած կանչեց Ջուլբարսին.
— Եթե կարող ես, — ասաց, — ի՛նձ հասիր:

Մայրը ձայն տվեց. — Արի՛, ա՛յ որդի,
Տար արածացրու՛ մի քիչ մեր հորթին:—
Եկավ, բայց ահա ձեռքն առավ գիրքը,
Իբր դաս պիտի սովորի ինքը:

Էջերը ծույլ-ծույլ երբ թերթեց երկար,
Նրան գրավեց մի սիրուն նկար,
Մեղմ ժպտում էր մի հերոս այնտեղից՝
Ծքանշանով ու աստղով դեղին:

«Ինչ է, չե՞մ կարող ես հիմա արագ
Սրանցից սարքել» — մտածեց Արան:
Եվ իսկույն բերեց թղթեր ու ներկեր,
Նայեց աստղին նա, գծեց ու ներկեց:

Ծքանշանն էլ պատրաստեց հետո
Ու կտրեց, կրծքին ամրացրեց հերթով
Եվ ապա ուրախ՝ մոր մոտ վազ տվեց,
Թե՝ ես հերոս եմ, տես, ի՛նչ են տվել:

Իսկ մայրը ասաց. — Տղա՛ ջան, գառնու՛կ,
Անվերջ խաղալով հերոս չեն դառնում,
Երբ փախչում ես դու գործից ու բանից,
Արժանի՞ ես էլ շքանշանի:
Պարգև են տալիս, իմացի՛ր, նրան,
Ով փայլում է լավ գործերով միայն:

Քաղաքային այգում, կարմիր ավազով ծածկված ծառուղու վրա, չալտիկ աքլորաճուտերի նման, կտուց-կտուցի են տվել ու աչքերով ծակում են իրար երկու փոքրիկ տղա.

— Էնպես կհասցնե՛մ...
— Փորձի՛ր:
— Հենց կհասցնեմ:
— Դե, փորձիր է՛լի...

Ձի «հասցնի», սուտ է, իրար խփելիս այդքան երկար չեն նախապատրաստվում: Ու լավ է, որ չի խփի, որքան էլ որ լեզվով «արյունահեղ» ճակատամարտ է սկսել:

Ի՞նչ ունեն բաժանելու: Երևի սովորում են նույն դասարանում, երևի, նույնիսկ, օգնում են միմյանց թվաբանության խնդիրները վճռելիս, կամ, ընկեր Սարգսյանից թաքուն, արտագրում իրարից:

Վեճը, հավանաբար, պատահական է: Դե, մեկին թվացել է, թե Սոնիկը մյուսին համարում է դասարանի ամենաքաջ տղան...

* * *

Օրեցօր աճող մեր թշնամության պատճառը չեմ հիշում: Հիշում եմ միայն, որ Հակոբը ծեծում էր ինձ, քանի դեռ ուժեղ էր ինձնից, ու ես, այդ բանը հաշվի չառնելով, քարերով հալածում



էի նրանց հավերին: Հետո ես էի ծեծում Հակոբին, երբ մալարիայով հիվանդանալուց հետո նա սաստիկ թուլացավ ու, այդ բանը հաշվի չպռնելով, քարերով հալածում էր մեր հավերին: Ու երկուսիս էլ ծեծում էին տանը, որովհետև Հակոբի հայրիկն ու իմ հայրիկը, ինչպես գյուղում էին ասում, թեև տարբեր մայրերից ծնված, բայց «հարազատ» եղբայրներ էին:

Սրտագին մտերմությունն ու անհաշտ թշնամությունն ապրում էին կողք-կողքի: Առաջինը կատաղեցնում էր ինձ ու Հակոբին, երկրորդը չէր հագեցնում չարության ծարավը, քանի որ մեծերը խանգարում էին իրենց մտերմությամբ;

# առավոտը

ԽԱԺԱԿ ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ

Եվ ժամանակ ու տեղ էինք փնտրում կռվելու համար: Դպրոցի բա՞կը... Չէ՛, հարմար չէր: Դահակ խորեն բիծան կմիջամտեր, ուսուցիչները կտեսնեին, վերջապես իմ ու Հակոբի կողմնակիցները կխառնվեին իրար և այդպես էլ անհայտ կմնար, թե ով ում հաղթեց: Տնամերձ այգինե՞րը... Չէ՛, այդ տեղն էլ հարմար չէր: Մայրս ու Նվարդ քեռակինը՝ Հակոբի մայրը, միշտ միասին էին լինում տնամերձերում: Նրանք երկուսին էլ նայում էին նույն զորովանքով, երբեմն, նույնիսկ, մեկը մյուսին ասում էր.

— Աղջի, հենց ապրես, ծեռս ծանր է, էն լակոտին մի ապտակ տուր:

«Էն լակոտը» կամ ես էի, կամ Հակոբը: Երկուսս էլ, իհարկե, հեշտությամբ խույս էինք տալիս ապտակներից, բայց հավասար բաժանված զորովանքը թևաթափ էր անում մեզ, մարում կռվելու ցանկությունը:

Մնում էր ձորը: Այնտեղ կարելի էր կռվել, կարելի էր հաղթել ու պարծենալ ավելի փոքրերի առաջ: Բայց այնտեղ էլ պետք էր գնալ ժամանակին: Չէր կարելի գնալ ո՛չ ճաշից առաջ, ո՛չ ճաշից հետո: Այդ ժամերին լինում էին մեծահասակ տղաները, որոնք բաժանում էին կռվողներին՝ քոթակելով:

Ու գնում էինք լողանալու վաղ առավոտյան, երբ գետի ջուրը դեռևս սառն էր լինում, ավազը՝ խոնավ, երբ մերկանալիս սրթսրթում էինք, թեև ցույց էինք տալիս, թե այրվում ենք շոգից:

Նախորդ օրը յուրաքանչյուրս առանձին զգուշացնում էինք տղաներից մեկն ու մեկին.

— Առավոտը կգաս ձորը:

— Ինչի՞:

— Մեկի հետ խոսելիք ունեմ:

Գալիս էին մեր մարտավկաները, առանց հանվելու նստում գետափի սառը քարերին և, երբ մենք կռվելու ակնհայտ նշաններ էինք ցույց տալիս, «կրակի վրա յուղ էին լցնում», իբրև թե ամեն ինչից անտեղյակ.

— Գևորգ, ծեռ քաշի, ախր, Հակոբը քեզ հումհում կուտի:

— Չէ՛, ի՛նչ ես ասում,—միջամտում էր մյուսը,— Գևորգը Հակոբին մի ծեռքով կծեծի, հո առաջին անգամը չի...

Եվ կպչում էինք իրար, հարվածներն իջնում էին մերկ մարմիններին, զնգալով կռիվը տաքանում էր, մինչև ձորի գլխին երևում էր բահը ուսին մի ջրվոր ու անտարբեր ձայնով բարկություն էր խաղում.

— Ա՛յ տղա, էյ, մի՛ զզվեք, եկել եմ ականջներդ կպոկեմ...

Սա ավարտի ազդանշանն էր: Իրարից պոկվում էինք հոգնած, ջարդված, վերջին անգամ ֆշշում էինք իրար վրա.

— Գնա՛, էժան պրծար...

— Դու գնա մամայիդ գանգատվի...

Յուրաքանչյուրը հեռանում էր իր մարտավկայի հետ: Կածանի վրա ամեն մեկիս մարտավկան համոզում էր.

— Քու հարվածները որտե՛ղ, նրանը որտե՛ղ... Հա՛յ, հո՛ւյ... Չէ՛, ախպեր, լավ ղնքսեցիր...

Այսպիսով յուրաքանչյուրս վերադառնում էր հաղթած ու հաղթած մնում մինչև երեկո... Երեկոյան պարզվում էր, որ մեր մարտավկաները շատ էլ գաղտնապահ չեն: Նրանք կռվի պատմությունը զարդարում էին ու պատմում միայն մեկին (ամենամոտիկ ընկերոջը): Հետո... Հետո լուրն անցնում էր բերնեբերան ու հասնում մերոնց, իսկ մերոնք երեկոները փշրում էին մեր «հաղթանակները» անհոգ սառնասրտությամբ, այսինքն պատժում էին երկուսիս էլ:

Այսպես ծգվում էին օրերը, չեմ ասի, թե՝ առանձնապես քաղցր: Պարտությունն ու հաղթանակն այնքան մոտ էին, այնքան նման էին իրար, որ հաճույքը խեղդվում էր վշտի մեջ, ու մնում էին միայն դեմքերիս ու մարմիններիս կապույտ բծերը, մեկ էլ՝ կռվելու ծարավը:

* * *

Առավոտն իսկական իմ ուզածի նման է, երկնքում ամպ չկա, դպրոցում՝ դաս: Իմ մարտավկան արդեն անփույթ շվշվացնելով թրև է գալիս մեր դռան առաջ: Այսօր ես ընտրել եմ այնպիսի մեկին, որ, հավատացած եմ, լուրը մեծերի ականջը չի հասցնի, իսկ տղաներին անաչառ տեղեկություն կտա իմ հաղթանակի մասին:

Տարբեր կածաններով, բայց գրեթե միաժամանակ հասանք գետափ: Հակոբը շորերը հանեց, ես էլ հանեցի:

—Չե՞ս շոգում,—հարցրեց Հակոբն իր մարտավկային,— ես շոգում եմ:

Նրա մարտավկան փնթփնթաց, թե ինքն էլ է շոգում, բայց լողանալու տրամադրություն չունի:

Հետո Հակոբն իբր թե հանկարծ նկատեց ինձ ու թունավոր ժպտալով ասաց.

— Է՛յ, թրջված հավ, գետը չմտնես, հանկարծ կխեղդվես, վրաս մարդ կհաշվեն։

Ու թռավ ջուրը։

Հասկանալի է, որ ես էլ թռա հետևից։

Պայքարն սկսվեց գետի ամենախոր տեղը, ժայռի տակ, որտեղ ջուրը պտտվում էր, ինչպես մենք էինք ասում, «սատանի փոսում»։

Կատաղի հարձակվում էինք իրար վրա, կառչում միմյանց թևերից, ուսերից, մեկս մյուսին



Նկ. ՎԱՁԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

հրում դեպի ցած ու, թե հաջողում էինք «խեղդել», հաղթական աղաղակով լցնում էինք ձորը.

— Դե, գնա, հա՛...

Երկուսս էլ սոսկալի հոգնեցինք։ Օդն արդեն շառաչով էր դուրս գալիս ուռած կրծքներիցս։ Սառը ջուրը կապում, կաշկանդում էր ոտքերս, ես զգում էի, որ այսպես շարունակվել չի կարող, բայց հուսահատ կատաղությամբ հարձակվում էի նորից ու նորից։ Ժայռի տակ ջուրը ցայտում էր, շառըվանում, իսկ մեր մարտավկաները ժայռի վրա կանգնած անտարբեր հետևում էին մենամարտին։

Ականջներիս մեջ խշշում էր ջրի աղմուկը, դա մեր բարձրացրած շառըվանների աղմուկն էր և...

... Աչքս ընկավ ժայռին։ Դրա վրայից խուճապահար փախան մեր մարտավկաները։ Նույն ժամանակ աղմուկն ահռելի դարձավ... «Սելավ»-անցավ մտքովս։ Պղտոր ջուրը հարվածեց միանգամից, ինձ զարկեց ժայռին։ Վերջին անգամ տեսա կածանն ի վեր փախչող մարտավկաներին, հիշեցի, որ մեր գետը հանկարծ վարարելու սովորություն ունի, որ անցյալ տարի այդպես խեղդվել են երկու քաղվոր աղջիկ...

* * *

Աչքերս բացեցի։ Պառկած էի ավազի վրա, բերնումս արյունահամ էի զգում, երկինքը պտտվում էր, պտտվում, իսկ մեկն աղիողորմ հեկեկում էր կողքիս.

— Գևորգ ջա՛ն, ախպեր ջա՛ն, Գևո՛րգ...

Մարտավկաները չկային, ձորի պռունկին չկար ոչ մի ջրվոր...

... Նրա մերկ մարմինը սառն էր, ճապուկ։ Ահռելի ճիգ անելով, նա կածանն ի վեր տանում էր ինձ շալակած ու ամբողջ ժամանակ լաց էր լինում.

— Գևորգ ջա՛ն, ախպեր ջա՛ն, Գևո՛րգ...

* * *

Մի ամիս ես պառկեցի։ Բուժակ Մելիքը տեղը գցեց դուրս ընկած ոտքս, դեմքիս ու մարմնիս ջարդվածքները լավացան... Մի ամբողջ ամիս ես մեր ու Հակոբենց տան ուշադրության կենտրոնում էի։ Դա նշանակում էր ամենալավ խաղողը, խնձորները, դեղձերը, դա նշանակում էր մայրիկիս խոնավ աչքերը Հակոբին համբուրելիս, նրա օրհնանքը, որ Հակոբը լսում էր ամաչելով...

* * *

Քաղաքային այգում, կարմիր ավազով ծածկված ծառուղու վրա, չալտիկ աքլորահուտերի նման, կտուց-կտուցի են տվել ու աչքերով ծակում են իրար երկու փոքրիկ տղա.

— Էնպե՛ս կհասցնեմ...

— Փորձի՛ր...

Ես մոտենում եմ նրանց.

— Տղաներ, մի՛ կռվեք,— ասում եմ,— ա՛յ, Հակոբն իմ ընկերն էր, իսկ մարտավկաները փախան...

Նրանք, իհարկե, չեն հասկանում ասածս։ «Էս ինչ մազալու քեռի է»—երևի մտածում են իմ մասին, բայց, համենայն դեպս, էլ չեն կռվում։

Լա՛վ է, որ չեն կռվում...




ՋԱՆՆԻ ՌՈԴԱՐԻ

ԳԼՈՒԽ ՅՈԹԵՐՈՐԴ[*]

Հաջորդ օրն արթնանալով, քաղաքի բնակիչները տեսան, որ բոլոր անկյուններում հայտագրեր են փակցված հետևյալ բովանդակությամբ.

«Այսօր առավոտյան (իսկ ավելի սխալ՝ ժամը 48-ին) հայից ընկած տենոր Ջելսոմինոն՝ շուռշանորդու մեկը, որը հենց նոր է վերադարձել Եվրոպայի ու Ամերիկայի խոշորագույն թատրոններում բազմաթիվ ձախողումներ ունենալուց հետո, ուր նրան շվացնելով դուրս են արել, քաղաքային թատրոնում երգելու չէ:

Քաղաքի բնակիչներին խնդրվում է չգալ:

Տոմսերը տրվում են ծրիս»:

Բնական է, որ այս հայտագիրը պետք էր հասկանալ հակառակ ձևով, և քաղաքի բոլոր բնակիչներն էլ հասկացան, որ հայտագրում ամեն ինչ շուռ տված պետք է ընդունել: «Ձախողում» բառի տակ պետք էր հասկանալ «հաջողություն», իսկ «չպիտի երգի» արտահայտությունը նշանակում էր, որ Ջելսոմինոն անպայման պիտի երգի ժամը 48-ին, այսինքն՝ 21-ին:

Ճիշտն ասած, Ջելսոմինոն այնքան էլ չէր ուզում, որ հայտագրում հիշատակվի Ամերիկա կատարած ուղևորության մասին:

— Ես ոչ մի անգամ Ամերիկայում չեմ եղել,— բողոքում էր նա:

— Հենց բանն էլ այդ է,— հակաճառեց նրան մաեստրո Դոմինոն,— դա սուտ է, նշանակում է, որ այդպես էլ պիտի լինի: Եթե դու Ամերիկայում եղած լինեիր, մենք ստիպված պիտի գրեինք, որ դու Ասիայում ես գաստրոլներ տվել: Այդպես է օրենքը: Մոռացիր օրենքները և մտածիր միայն երգեցողության մասին:

Այդ առավոտը, ինչպես արդեն հայտնի է մեր

[*] Սկիզբը՝ վեցերորդ գլուխը նախորդ համարում:

ընթերցողներին, բավական անհանգիստ առավոտ էր (թագավորական պալատի ճակատին հայտնաբերվել էր Կաղլիկ-կատվի գրած նշանավոր խոսքը): Օրվա երկրորդ կեսին քաղաքում նորից հանգստություն տիրեց և երեկոյան ժամը իննը դեռ չեղած՝ թատրոնում, ինչպես հետո գրեցին թերթերը, «անապատի նման դատարկություն էր տիրում»: Այդ նշանակում էր, որ թատրոնը հանդիսատեսներով լեփ-լեցուն էր:

Բոլորը թատրոն էին եկել այն հույսով, որ մի իսկական երգչի են լսելու: Իզուր չէր մաեստրո Դոմինոն հանդիսատեսներին գայթակղելու համար Ջելսոմինոյի մասին ամենաանհավատալի լուրեր տարածում:

— Ձմռանը հեռներդ շատ բամբակ վերցնեք,— ասում էին Դոմինոյի գործակալները, որոնք թափառում էին քաղաքում:— Այդ տենորն ուղղակի սարսափելի է և ձեզ դժոխային տանջանքներ է պատճառելու:

— Պատկերացրեք տասնյակ կատաղած շների հաչոցը, դրան գումարեք մի երգչախումբ, որ կազմված է հարյուրավոր, պոչերը կրակ տված կատուներից: Այս բոլորը խառնեք հրշեջ մեքենաների շչակների վայնասունին և մի լավ թափ տվեք՝ կստացվի Ջելսոմինոյի ձայնի նման մի բան:

— Կարճ ասած՝ դա հրեշ է:

— Իսկական հրեշ: Նրա տեղն է ճահճում գորտերի հետ կռկռալը և ոչ թե թատրոնում երգելը: Նրան պետք է ստիպել, որ ջրի տակ երգի՝ առանց գլուխը դուրս հանելու: Կատաղած կատվի նման թող սուլի:

Այս պատմությունները, ինչպես բոլոր տեսակի պատմությունները Ստախոսների աշխարհում, մարդիկ հակառակ իմաստով էին հասկանում և, պարզ է, դրա համար էլ թատրոնը համերգն սկսելուց դեռ շատ առաջ այնպես էր լցվել, որ ասեղ գցելու տեղ չկար:

Ժամը ուղիղ իննին արքայական օթյակում հայտնվեց նորին մեծություն Ջակոմոն Առաջինը, որն իր գլխին հպարտորեն կրում էր նարնջագույն կեղծամը: Թատրոնում բոլոր ներկա եղողները տեղերից վեր կացան և, խոնարհ գլուխ տալով թագավորին, նորից նստեցին իրենց տեղը, ըստ որում

աշխատում էին չնայել նրա կեղծամին։ Ոչ ոք իրեն թույլ չտվեց ամենափոքրիկ ակնարկ անգամ անելու առավոտյան պատահածի մասին։ Ախր, բոլորը գիտեին, որ թատրոնը լի է լրտեսներով, որոնք պատրաստ էին իրենց բլոկնոտներում գրի առնելու անզգույշ մարդկանց խոսակցությունները։

Դոմիսոլը, որ անհամբեր սպասում էր թագավորին և վարագույրի վրա բացած հատուկ անցքից



նայում էր արքայական օթյակին, հասկացրեց, որ Ջելսոմինոն պատրաստվի, իսկ ինքը իջավ նվագախմբի մոտ։

Հենց որ Ջելսոմինոն հայտնվեց բեմի վրա, Դոմիսոլի գործակալների ազդանշանով դահլիճում սկսեցին սուլել ու բղավել.

— Կորչի՛ Ջելսոմինոն...

— Կորի՛ր այստեղից, շու՛ն...

— Չքվի՛ր քո ճահիճը, գո՛րտ...

Ջելսոմինոն համբերությամբ լսեց այս ու դրանց նման հիշոցները և սպասեց, մինչև դահլիճում նորից լռություն տիրի։ Հետո նա սկսեց երգել իր ծրագրի առաջին երգը։ Նա երգում էր ամենաքնքուշ ձայնով, ըստ որում այնքան պինդ էր շրթունքները սեղմել իրար, որ հեռվից թվում էր, թե բերանը բոլորովին չի բացում։ Դա այն երգերից մեկն էր, որ երգում էին նրա հայրենի գյուղում։ Դա մի հատուկ երգ էր մի փոքր ծիծաղելի խոսքերով, բայց Ջելսոմինոն այնքան զգացմունքով էր երգում, որ շուտով ամբողջ դահլիճում սկսեցին սպիտակին տալ թաշկինակները։ Հանդիսականները չէին հասցնում արցունքները սրբել։ Երգը վերջանում էր շատ բարձր նոտայով, բայց Ջելսոմինոն ոչ միայն ավելի բարձր չերգեց, այլ՝ ընդհակառակը, աշխատեց, որքան կարելի է, խլացնել ձայնը։ Սակայն դա չօգնեց, և հանկարծ վերնասրահում հնչեց չարաբաստիկ «շըխկշըխկոցը»։ Տրաքվեցին ամենանուրբ ապակուց պատրաստված տասնյակ լապտերները։

Ասենք այդ աղմուկը խլացավ սուլոցի սարսափելի փոթորկի մեջ։ Հանդիսականները մեկ մարդու պես ոտքի էին ելել և գոռում էին ամբողջ կոկորդով մեկ.

— Կորի՛ր այստեղից, խեղկատա՛կ...

— Էլ չե՛նք ուզում քեզ լսել...

— Քո սերենադները երգիր ծովացուլերի՛ համար։

Մի խոսքով, եթե թերթերը կարողանային ճշմարտությունը գրել, մենք կկարդայինք. «Հասարակության հրճվանքին չափ ու սահման չկար»։

Ջելսոմինոն գլուխ տվեց ու սկսեց երկրորդ երգը երգել։ Այս անգամ, պետք է խոստովանել, որ նա մի փոքր՝ չափն անցավ։ Երգը նրան դուր էր գալիս, երգեցողությունը նրա տարերքն էր, հասարակությունը նրան հիացմունքով էր լսում և, Ջելսոմինոն մոռանալով իր սովորական զգուշությունը, բարձր նոտա վերցրեց, որը մեծ հրճվանք պատճառեց նրանց, ովքեր տոմս չէին ճարել և թատրոնից մի քանի կիլոմետր հեռու կանգնած՝ լսում էին։

Ջելսոմինոն սպասում էր, որ ծափահարությունները կլինեն կամ սուլոցի ու հիշոցների մի նոր փոթորիկ կբարձրանա։ Բայց փոխարեն պայթեց մի անզուսպ ծիծաղ, որից նա զարհուրեց։ Թվում էր, թե հանդիսականները մոռացել են նրան, բոլորը մեջքները դարձրել էին տղայի կողմը և ծիծաղելով նայում էին մի կետի։ Ջելսոմինոն նույնպես նայեց այն կողմը և զարմանքից նրա երակներում արյունը սառեց, իսկ ձայնը դեմ առավ կոկորդին։ Երկրորդ երգի հնչյունները չէին ջարդել պատերի վրա կախված ծանր ջահերը, բայց դրա փոխարեն ավելի սարսափելի բան էր տեղի ունեցել։ Նշանավոր նարնջագույն կեղծամը հօդս էր թռել և մերկացրել Ջակոմոն թագավորի գլուխը։ Թագավորը մատներով կտկտացնում էր իր օթյակի հենափայտը և աշխատում էր ընդհանուր ուրախության պատճառը հասկանալ։ Խեղճը ոչինչ չէր նկատել, և ոչ ոք սիրտ չէր անում ճշմարտությունն ասել նրան։

Դոմիսոլը, որ մեջքով էր կանգնած դեպի դահլիճը, ոչինչ չէր կարող տեսնել, դրա համար էլ նշան արեց Ջելսոմինոյին, որ սա սկսի երրորդ երգը երգել։

«Եթե Ջակոմոնն այսպես խայտառակվեց, այդ չի նշանակում, թե ես էլ պիտի նույն բախտին արժանանամ։ Այս անգամ ես իրոք ուզում եմ լավ երգել։

Եվ նա սկսեց երգել այնքան գեղեցիկ, այնպիսի ոգևորությամբ, այնքան ուժեղ ձայնով, որ առաջին իսկ հնչյուններից թատրոնն սկսեց փուլ գալ։ Առաջինը ջարդվեցին և ցած ընկան ջահերը՝ ճզմելով այն հանդիսականներին, որոնք չէին հասցրել

որևէ անվտանգ տեղում թաքնվել։ Հետո փլվեց օթյակների մի ամբողջ շարք։ Դա հենց այն օթեկաշարն էր, ուր գտնվում էր թագավորական օթյակը, բայց Ջակոմոնն, իր բախտից, արդեն հասցրել էր հեռանալ թատրոնից։ Բանն այն է, որ նայել էր հայելու մեջ, որպեսզի տեսնի պետք չէ՞ արդյոք նորից շպարվել և սարսափով նկատել էր որ՝ կեղծամը թռել է գլխից։ Ասում են, որ այդ գիշեր թագավորի հրամանով կտրել էին բոլոր այն պալատականների լեզուները, որոնք նրա հետ եղել էին թատրոնում և չէին հայտնել այդքան ցավալի փաստի մասին։

Իսկ Ջելսոմինոն շարունակում էր երգել, և բոլոր հանդիսականները խռնվելով, նետվեցին դեպի դուռը։ Երբ փուլ եկան վերջին օթեկաշարն ու կոմոնի պահնորդները իրար երես էին նայում ու ասում.

— Բայց նրանք, գիտե՞ս, «բրավո» են կանչում, որովհետև տղան լավ է երգում և ոչ թե նրա համար, որ երգը դուր չի գալիս իրենց։

Ջելսոմինոն երգն ավարտեց բարձր նոտայով, որը շուռ տվեց թատրոնից մնացած ավերակները և փոշու հսկայական ամպեր բարձրացրեց։ Նա տեսավ, որ Դոմիսոլը իր դիրիժորական փայտիկը թափահարելով ուզում է անցնել աղյուսի կույտերից և մոտենալ իրեն։

«Ինձանից երգիչ դուրս չեկավ, — հուսահատ մտածեց Ջելսոմինոն։ — Փորձեմ գոնե ողջ և առողջ գլուխս ազատել այստեղից»։

Պատի մեջ բացված անցքով նա դուրս եկավ



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

վերնասրահը, դահլիճում մնացին միայն Ջելսոմինոն և Դոմիսոլը։ Առաջինը դեռ շարունակում էր աչքերը փակած երգել։ Նա մոռացել էր, որ գտնվում է թատրոնում, մոռացել էր, որ ինքը Ջելսոմինոն է և մտածում էր միայն այն հաճույքի մասին, որ պատճառում էր նրան երգեցողությունը։ Իսկ Դոմիսոլի աչքերը դժբախտաբար բաց էին, և նա ամեն ինչ տեսնում էր ու հուսահատությունից պոկում իր մազերը։

— Աստված իմ, թատրո՜նս... Ես սնանկացած եմ, բոլորովին սնանկացած...

Թատրոնի առջևի հրապարակում հավաքված ամբոխն այս անգամ գոռում էր.

— Բրա՜վո, բրա՜վո...

Ըստ որում այս անգամ նրանք այնպիսի արտահայտությամբ էին «բրավո» կանչում, որ Ջա-

հրապարակ և դեմքը ծածկելով խառնվեց ամբոխին։ Քիչ հետո նա հասավ մի դատարկ փողոց և այնքան արագ սկսեց վազել, որ ամեն քայլափոխի կարող էր ոտքը ջարդել։

Իսկ Դոմիսոլը, որն աշխատում էր տղային աչքից բաց չթողնել, ընկավ նրա հետևից.

— Կանգնի՛ր, դժբա՛խտ, վճարի՛ր թատրոնիս արժեքը։

Ջելսոմինոն շուռ եկավ մի նրբանցք, ներս ընկավ առաջին պատահած նախամուտքը և շնչահատ լինելով վազեց մինչև ձեղնահարկ։ Այստեղ նա հրեց մի դուռ և հայտնվեց Բանանիտոյի արվեստանոցում, ճիշտ նույն պահին, երբ Կաղլիկկատուն ցած թռավ պատուհանի գոգից։

(Շարունակելի)




**Ս. ՄԿՐՏՉՅԱՆ**

Զե՞ք ճանաչում դուք Արամին,
Ապրում է նա Լուսավանում,
Երես առած տղա է մի,
Ոչ մի բանի չի հավանում:

Եվ ինչպիսի՜ մեծամիտն է.
Քո նոր ավտոն կփնովի,
Իսկ իր մաշված հեծանիվը
Այստեղ-այնտեղ հա՜ կգովի:

Մի օր էլ մեր Դեղձանիկը,
Նստած նրա հեծանիվը,
Ծիծեռի պես սուրաց թեթև,
Եկավ կանգնեց կիպ մեր առջև:

— Հավանո՞ւմ եք,— ասաց,— տղե՛րք,
Հորեղբայրս է նվիրել ինձ:
— Վա՜յ, ինչ լա՜վն է,— գոչեցինք մենք,—
Կտա՞ս մենք էլ քշենք մի քիչ...

Իսկ Արամը մեկից պոռթկաց.
— Դա ի՞նչ է, որ խնդրում եք զուր.
Ղեկը մաշված, զանգը պոկված,
Շղթան հին է, ակները՝ ծուռ...

Ու քրքջաց Դեղձանիկը.
— Էլ ո՞ւր էիր գովում սրան,
Չէ՞ որ դա քո հեծանիվն է,
Ա՜յ դու գոռոզ, ինքնահավան...



# ԱՅՆՏԵՂ, ՈՒՐ ԵՐԲԵՔ ՉԵՆ ՆԱՀԱՆՋՈՒՄ

**ՀԵՆՐԻ ԲԱԴԱԼՅԱՆ**

Դպրոցի միջանցքով անցնողներին իսկույն գրավում էր 6-ա դասարանի դռան վրա փակցված հայտարարությունը. «Այստեղ սովորում է մարմնամարզության գծով շրջանի չեմպիոն Հակոբ Բաստեղյանը»:

Հետաքրքրությունը ակամայից իսկույն համակում էր բոլորին և շատերը անպայման ուզում էին ծանոթանալ այդ դասարանի պիոներների հետ:

Դրուժինայում նրանց ջոկատը կոչվում է խիզախ օդաչու Էդիկ Բախշինյանի անունով:

— Ես սիրով կդառնամ ձեր ջոկատի բարեկամը,— դեռ առաջին հանդիպման ժամանակ ասաց նրանց ինքը՝ օդաչուն,— միայն մի պայմանով, որ երբեք ջոկատում նահանջողներ չլինեն:

— Չի՛ լինի,— գրեթե միաբերան պատասխանեցին ջոկատայինները:

Հիմա ջոկատում բոլորը հաճույքով են հիշում այն հաջողությունների մասին, որոնք ծնունդ առան ՍՄԿԿ 60-ամյակի պատվին ծավալված «Ում ջոկատն է ամենալավը» համամիութենական մրցության ընթացքում:

Ջոկատի պիոներները միշտ սիրով են խոսում արտադրության իրենց բարեկամների մասին:

— Կաթի գործարանի կոմունիստական աշխատանքի բրիգադի անդամները մեր վաղեմի բարեկամներն են,— ասում են Թաչիկը, Երվանդն ու Հարությունը,— նրանք մեզ ծանոթացրել են գործարանի բոլոր ցեխերի արտադրական պրոցեսներին, մենք հաճախ ենք հանդիպում ու սրտաբաց զրուցում արտադրության առաջավորների հետ, սովորում նրանցից ապրել, սովորել, աշխատել ու գործել կոմունիստաբար:

Բայց պիոներների բարեկամները միայն գործարանում չեն: Հարցրեք յուրաքանչյուրին, և ձեզ կպատասխանեն:

— 128-րդ մանկապարտեզի սաների համար ջոկատի պիոներներով խաղալիքներ ենք պատրաստել, տիկնիկներին հագուստներ կարել, վերանորոգել երեխաների փոքրիկ սեղաններն ու աթոռները, բարեկարգել ենք մանկապարտեզի բակը:

— Մեր ջոկատից 8 աստղիկավարներ վերցրել են 2-րդ ա դասարանի հոկտեմբերիկների շեֆությունը:

— Բարեկամներ ենք դարձել 54-րդ դպրոցի 9-րդ ջոկատի պիոներների հետ և մրցման հրավիրել նրանց:

— Մեր բարեկամական կապերը ձգվում են մինչև Ուկրաինա, Չեխոսլովակիա, Լեհաստան, Բուլղարիա, Ռումինիա, Ֆրանսիա:

* * *

Դրուժինայում հայտարարված էր լավագույն առաջարկությունների և նախաձեռնությունների կոնկուրս:

Պիոներական սենյակը ամբողջ օրը չէր դատարկվում, իսկ ամենից շատ Էդիկ Բախշինյանի անվան ջոկատի պիոներներն էին անհանգստացնում ավագ ջոկատավար Կիմա Ավագյանին:

— Ընկեր Ավագյան, ես առաջարկում եմ ջոկատներում ստեղծել պիոներական լապտերիկների խումբ, որոնց անդամները կհայտնաբերեն և կկանխեն դպրոցի թաղամասում բնակչության կողմից ջրի և լույսի աննպատակ օգտագործման դեպքերը,— առաջարկեց Արծվիկը:

— Իսկ մենք առաջարկում ենք ետ մնացողներին օգնելու նպատակով դասարանում ստեղծել պիոներական շտապ-օգնություն,— ասացին Խաչիկն ու Հայկուհին:

Եվ, ա՜յ քեզ բան: Ինչ որ առաջարկեցին ջոկատի պիոներները, իսկույն գործի վերածեցին:

Հնազանդի և Կարապետի նախաձեռնությամբ ջոկատում ստեղծվեց 110 գրքից բաղկացած գրադարան:

Մարի Քեհյանին արդեն վաղուց հրապուրում էր թատերական արվեստը, դրա համար էլ նա, առանց տատանվելու, առաջարկեց ստեղծել «Պատանեկություն» պիոներական թատրոնը: Բեմադրեցին «Դառնի կ ախպեր», «Գիքորը» պիեսները:

Քսանհինգ համերաշխ անդամներ են սովորում ջոկատում, իսկ նրանցից միայն 8-ը նվագում են երաժշտական գործիքների վրա:

Ջոկատի խորհուրդը մտահոգված է այնպես անել, որ բոլորը ջոկատում կարողանան զբաղվել երաժշտությամբ:

Երբ ջոկատում անցկացվեց մետաղ-լոմի հավաքման անհատական մրցություն, ընդամենը հավաքվեց 5 տոննա մետաղ-լոմ: Իսկ Հակոբը դարձավ այդ մրցության հերոսը, հավաքելով 700 կգ մետաղի ջարդոն:

— Դե էլ ինչ սպորտսմեն, որ այդքան էլ չհավաքեմ,— ասել էր նա:

* * *

«Երևան, Միսակ Մանուշյանի անվան դպրոց, Էդիկ Բախշինյանի անվան ջոկատ»: Եթե նախկինում այս հասցեն հայտնի էր միայն դրուժինայում, ապա շուտով ջոկատը հանրաճանաչ դարձավ շրջանում, իսկ հետո՝ քաղաքում:

— Լա՛վն են մեր ջոկատայինները,— հպարտությամբ ասում են դասղեկ ընկեր Փինաչյանը և ջոկատավար ընկեր Շաքեն,— նրանք այնպես կազմակերպեցին աշխատանքները, որ ո՛չ մի հարցում ետ չմնացինք:

Եվ իրոք, գնալով բարձրացավ ջոկատի ուսման առաջադիմությունը, բոլորն էլ աշխատում են ջոկատի պատիվը բարձր պահել:

— Պարտիայի 60-ամյակի պատվին մենք դեռ շատ գործեր ունենք անելու,— ասաց մի օր ջոկատի խորհրդի նախագահ Խաչիկ Մինասյանը,— իսկ մեզանից ոմանք գուցե մտածում են, որ ուսումնական տարին ավարտվեց, ամեն բան պետք է վերջանա...

— Կարող ես անպատասխանատու հայտարարություններ չանել,— վրա տվեց Հռիփսիկը,— ես առաջարկում եմ ամառային արձակուրդներին դպրոցի բակում ստեղծել պիոներական ճամբար և այն կոչել ՍՄԿԿ 60-ամյակի անվան:

— Ա՛յ, դա հիանալի կլինի,— ուրախացան Ալվարդն ու Սարգիսը:

— Ճի՛շտ է, ճի՛շտ է,— ոգևորվեցին մյուսները



և իսկույն պայմանավորվեցին ջոկատի խորհրդի առաջիկա նիստում քննարկել ջոկատի ամառային հանգստի հարցը:

Լուսանկար՝ ԱՌԱՔԵԼ ՋՐԱՂԱՑՊԱՆՅԱՆԻ






# ԱՐՈՒՍ ՈՍԿԱՆՅԱՆ

Մեզանից մոտ վեց տասնամյակ առաջ էր: Մի արևոտ ու գեղեցիկ օր, Բոսֆորի ջրերը փայլփլում էին կապտա-կանաչագույն խաղով, ու Պոլիսը ծուլացել էր շոգից: Ծիծեռնակները սավառնում էին փողոցից վեր, ծվծվում: «Այսօր ես մի նորություն պիտի լսեմ»: Հենց այդ օրը նա իմացավ, որ Վահրամ Փափազյանը խումբ է կազմել և բեմադրում է Շեքսպիրի «Օթելլո» պիեսը: Նա ծնողներից թաքուն գնաց ու խնդրեց, որ իրեն էլ ընդունեն խմբի մեջ: Անմիջապես ընդունեցին ու հանձնեցին Էմիլիայի դերը: Արուսը խաղաց շատ հիանալի: Այնքան լավ, որ միանգամից լուրը տարածվեց ու այդ մասին ծնողներն էլ իմացան:

Հին քաղաք էր Պոլիսը: Ուներ հայկական թատ: Եվ հայերը ունեին նահապետական սովորություն: Նրանք ամոթ էին համարում կանանց ու աղջիկների բեմ դուրս գալը:

—Դու իմ անունը խայտառակեցիր,— ասում էր Արուսին հայրը:

— Այլևս թույլ չեմ տա, որ բեմ բարձրանաս,— ասում էր բարի մայրը:

Եվ որպեսզի Արուսը թատրոնը մոռանա, նրանք մեկնեցին Բուլղարիա: Երկար ժամանակ նրանք մնացին այնտեղ: Ծնողները կարծեցին, թե Արուսը արդեն մոռացել է թատրոնը, և վերադարձան Պոլիս:

Անցել էր երկու տարի: Մի շոգ օր էլ Արուսն իմացավ, որ տաղանդավոր արտիստներ Արմեն Արմենյանն ու Հովհաննես Աբելյանը իրենց խմբով եկել են Պոլիս ներկայացում տալու:

«Ախր ես ինչպե՞ս չգնամ, ինչո՞ւ չգնամ: Չէ՞ որ սիրում եմ բեմը: Ես ուզում եմ արտիստուհի դառնալ»—մտածեց Արուսը և այս անգամ ծնողներից թաքուն գնաց թատրոն: Նրան շատ սիրով ընդունեցին: Արուսը ստացավ նոր դեր՝ Շիրվանզադեի «Պատվի համար» դրամայում: Ճիշտ է, խաղաց ուրիշի ազգանվան տակ, որպեսզի իրեն չճանաչեն, բայց էլի ճանաչեցին:

Հիմա այլևս ոչինչ չէր օգնի: Արուսն արդեն մեկընդմիշտ կապվել էր թատրոնի հետ:

Արուսը թատերական խմբի հետ եկավ Բաքու: Այստեղ նա մեծ արտիստուհու համբավ ձեռք բերեց: Նրան ասում էին Սոնա: Կարծում եք նա երկու անու՞ն է ունեցել: Բոլորովի՛ն: Նա պարզապես Շիրվանզադեի «Չար ոգի» դրամայում այնքան լավ խաղաց Սոնայի դերը, որ շատերին թվում էր, թե իր անունն էլ հենց Սոնա է:

Շատ շուտով Արուս Ոսկանյանի անունը տարածվեց ամբողջ Կովկասում: Նրան հրավիրում էին տարբեր տեղերից: Թիֆլիսում, Բաքվում և Կովկասի հայկական շրջաններում Արուսը ցուցաբերում էր իր տաղանդը, արվեստի ուժը, սովորեցնում էր մարդկանց բարին, ճշմարիտը: Այն ժամանակ ո՛չ թատրոնի շենք կար և ո՛չ էլ փոխադրական: Ճանապարհներն էլ կարգին չէին: Թատերական խումբը ոտքով ճանապարհվում էր գյուղից-գյուղ:

1921 թվականն էր: Կազմակերպվել էր Երևանի Գ. Սունդուկյանի անվան դրամատիկական թատրոնը: Արուս Ոսկանյանը անմիջապես եկավ Երևան և այնուհետև մինչև իր մահը՝ 1943 թվականը, փառապանծ արտիստուհին խաղաց Երևանի բեմերում, մեծ հիացմունք պատճառելով մայրաքաղաքի հասարակությանը:

Արուս Ոսկանյանը շատ բարի էր, կատակասեր, միշտ ժպտադեմ: Նա անչափ սիրում էր երեխաներին: Նա պիոներների պալատում և շատ դպրոցներում երեխաների հետ պարապում էր ու սովորեցնում թատերական արվեստի գաղտնիքները: Շատ դերասաններ, որոնք հիմա ռեսպուբլիկայում ճանաչված են, եղել են Արուս Ոսկանյանի աշակերտները: Բոլորը նրան ասում էին «Մեր Արուսը»: Իսկ մայրը նրան կանչում էր «Իմ Արուսը»: Հենց այդ վերնագրով էլ նա մի հիշողությունների գիրք է գրել Արուս Ոսկանյանի մասին: Եթե դուք ավելի եք ուզում իմանալ մեծ արտիստուհու կյանքի մասին, վերցրեք գրադարաններից ու կարդացեք այդ գիրքը:

*ՎԼԱԴԻՄԻՐ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

# ՕՐԱԾՈՒՅԾԸ

## ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ԵՐԳԻՉԸ

Հյուրերը նստած էին պատերի տակ՝ որը բազմոցի վրա, որը թախտին, որը բազկաթոռին, իսկ սենյակի մեջտեղում կանգնած էր մի փոքրիկ, 6—7 տարեկան տղա ու ոտանավորներ էր արտասանում։ Տղան լավ էր արտասանում՝ ճիշտ առոգանությամբ ու շեշտերով, բայց դա չէր, որ այդքան զարմացրել էր հյուրերին։ Քի՞չ երեխաներ կան, որ լավ են արտասանում։ Հյուրերին ապշեցրել էր այն, որ փոքրիկ Վոլոդյան մի ոտանավորն ավարտելով սկսում էր մյուսը և այդպես անվերջ։ Արդեն մոտենում էր ընթրիքի ժամը, բայց Վոլոդյան արտասանում էր ու արտասանում։ «Ա՛յ սա հիշողությու՜ն է, ա՛յ սա ընդունակությու՜ն է»,— ասում էին հյուրերը։



Եվ իրոք, տղան արտակարգ հիշողություն ուներ և շատ ընդունակ էր։ Այդ էր պատճառը, որ նա մեկ-երկու տարի հետո մեծ հաջողությամբ տվեց ընդունելության քննությունները և ընդունվեց Քութայիսիի դասական գիմնազիան։

Ճուտով նա դասարանում աչքի ընկավ նաև մի այլ ընդունակությամբ։ Վոլոդյա Մայակովսկին հիանալի նկարում էր։ Հատկապես ցածր դասարանցիները սիրում էին նայել, թե ինչպես է Վոլոդյան գրատախտակի վրա զանազան կենդանիներ նկարում։ Բայց ինչու՞ միայն դրա համար։ Երեխաները սիրում էին նրան, որովհետև Մայակովսկին խելացի էր ու շատ կարդացած, ընդունակ էր ու արդարամիտ։ Եվ բոլորովին էլ պատահական չէր, որ դեռ երկրորդ դասարանում սովորելիս նա մասնակցեց դպրոցում կազմակերպված դասադուլներին ու ցույցերին։ Այդ այն ժամանակ, երբ գիմնազիայի վրա թնդանոթներ էին ուղղված և ոստիկանությունն սպառնում էր քարը-քարի վրա չթողնել, եթե անկարգություններ կատարվեն։

Դեռ նրա տասնչորս տարին չէր լրացել, երբ առաջին անգամ բանտարկվեց հեղափոխական գործունեության համար։ Այն ժամանակ Մայակովսկին արդեն տեղափոխվել էր Մոսկվա և կապվել մարքսիստական ընդհատակյա կազմակերպություններին հետ։

Այսպես, դեռ պատանի հասակում Վլադիմիր Մայակովսկին իր կյանքը կապեց հեղափոխության հետ, դարձավ նրա զինվորն ու բանաստեղծը։

Դեռևս 1916 թվականին Մաքսիմ Գորկին Մայակովսկուն մեծ բանաստեղծ էր համարում։ Իրար հետևից լույս տեսնող նրա պոեմներն ու բանաստեղծությունները մեծ ընդունելություն էին գտնում, որովհետև նրանք համընկնում էին հեղափոխականորեն տրամադրված երիտասարդության ձգտումներին ու զգացմունքներին։ Մայակովսկին հեղափոխական էր նաև իր ստեղծագործությամբ։ Նա ամբողջ հասակով մեկ ծառացել էր հնի դեմ։

Իսկ երբ հեղափոխությունը հաղթանակեց, Մայակովսկին դարձավ սովետական կարգերի մեծ երգիչը։ Նա երգեց մեր կուսակցությանն ու ժողովրդին, երգեց մեծ Լենինին։

Մայակովսկին երեխաներին շատ էր սիրում և շատ էր գրում նաև նրանց համար։ Ո՞վ չի կարդացել նրա «Ինչն է լավը, ինչը՝ վատ», «Հրեղեն ձի», «Հեքիաթ Պետյայի, չաղ երեխայի և նիհարիկ Սիմայի մասին», «Ինչ դառնալ» և մյուս բանաստեղծությունները, որոնց մեջ երևում է մեծ բանաստեղծի՝ դեպի երեխաները տածած անսահման սերը։

Լրացավ հեղափոխության մեծ երգչի ծննդյան յոթանասուն տարին։

Մ Ե Ր Օ Ր Ա Ց Ո Ւ Յ Ց Ը

# ՆՈՐ ԱՆՈՒՆՆԵՐ,

ВОСТОК 5

ВОСТОК 6

Նորից ցնծությու՜ն, նորից ուրախությու՜ն, հպարտության վեհ զգացում, անհանգիստ սպասումի րոպեներ, ժամեր և օրեր...

Նորի՛ց տիեզերքի խորքերը ակոսելով սավառնում է սովետական երկրի անվեհեր քաղաքացին:

«Վոստոկ — 5»... Վալերի Բիկովսկի... Կայծակնային արագությամբ այս անունը տարածվեց աշխարհով մեկ:

Մեր օրերում պարզ է արդեն, որ հեքիաթն ու ֆանտաստիկը դարձել են իրականություն: Եվ այժմ ամեն մի թռիչք, մի նոր մայրուղի է հարթում դեպի հարևան մոլորակները, դեպի դարավոր առեղծվածի լուծումը:

Վալերի Ֆյոդորովիչ Բիկովսկին իր նախորդների՝ Յուրի Գագարինի, Գերման Տիտովի, Անդրիան Նիկոլաևի և Պավել Պոպովիչի օրինակով կհարստացնի մեր տիեզերագիտությունը նորանոր կարևոր տվյալներով, որոնք և կհանդիսանան մեր փառապանծ գիտնականների վեհ նպատակների իրագործման նախադրյալները:

Ամենուրեք միացված են բարձրախոսները, գրեթե ամբողջ աշխարհը մեծ անհանգստությամբ հետևում է



## ՆՈՐ ՍԽՐԱՆՔՆԵՐ

«Վոստոկ—5» տիեզերանավի թռիչքի ընթացքին...

Քանի՞ անգամ է Վալերի Բիկովսկին պտտվել երկրագնդի շուրջը. ե՞րբ պիտի վայրէջք կատարի... և նման հարցերով էին դիմում շարունակ երեխաները:

— Նավի բոլոր սիստեմները աշխատում են հիանալի: Ինքնազգացողությունս լա՛վ է,— հաղորդում է Վալերի Բիկովսկին:

Բայց ահա՛ մոտենում է թռիչքի երկրորդ օրվա ավարտը. և այդ ուժեղ կամքի տեր մարդը մի ինչ-որ անհանգստություն է զգում: Նա սպասում է... սպասո՜ւմ:

Ժամադրության վայրկյանը մոտենում է: Ինչո՞ւ, ինչո՞ւ է այդպես հուզվում, չէ՞ որ նույնիսկ իր թռիչքից առաջ նա այդպես չհուզվեց:

Եվ երբ Բիկովսկին կատարել էր մոտ 37 պտույտ, հանկարծ աշխարհը ուժգին ցնցվեց. դեպի աստղերը խոյացավ «Վոստոկ—6» տիեզերանավը, որը ղեկավարում էր աշխարհում առաջին կին տիեզերագնացը՝ Վալենտինա Վլադիմիրովնա Տերեշկովան:

Հանդիպումը կայացավ: Հուզիչ էր այդ պահը: Բայց պատասխանատվության մեծ զգացումը նրանց պահում էր զգաստ վիճակում և թռչելով շատ մոտ հեռավորության վրա, նրանք սըրբությամբ կատարում են իրենց վրա դըրված պարտականությունները:

Հազիվ հինգ տարեկան էր մեր Վալյան և դեռ տարված էր մանկական խաղերով, երբ նրա հայրը թշնամու դեմ մղած կատաղի մարտերում մի փոքր դադարի ժամանակ, հենված խոնավ խրամատի պատին, կարոտով հիշեց իր տունը, իր զավակներին, և նրա մտքով անցավ. «Երանի թռչունի թևեր ունենայի, թռչեի երեխաներիս մոտ...»

Ափսո՜ս, որ նա չտեսավ իր երազը իրականացած, չտեսավ, որ իր փոքրիկ Վալյան այսօր դարձել է «Չայկա» և ճախրում է տիեզերքի անհուններում:

Եվ բազմաթիվ երեխաներ ու պատանիներ հայացքները հառած դեպի կաթնագույն մշուշը, երազում են, թե իրենցից ո՞ր մեկը պիտի լինի օտար մոլորակի առաջին բնակիչը, բազմաթիվ խորհրդավորություններով լի տարածությունները հայտնաբերող՝ այդ նո՛ր, այդ հրաշագործ Կոլումբոսը:





Լրացավ մանկական գրող ՄԿՐՏԻՉ ԿՈՐՅՈՒՆԻ ծննդյան 50 տարին

# ԱՌԱԿՆԵՐ

## ԵՐԿՈՒ ՏԵՐԵՎ

Աշնանը ծառից տերևն ընկավ ցած,
Ընկերը նրա՝ ճյուղին մնացած,
Ծանակեց նրան.
— Վա՜յ դու, անպիտա՛ն,
Ո՞նց չդիմացար մեղմիկ զեփյուռին...—
Խոսքը անավարտ, աշնան պաղ քամին
Պոկեց, դեն նետեց այն անզգամին։

Ո՞ւր ես ուրիշին նետում թուք ու մուր,
Երբ ինքդ ճյուղին չես նստած ամուր։

## ՄԱՐԴՆ ՈՒ ՀԱԳՈՒՍՏԸ

Մեկը ծաղրում էր ընկերոջը իր.
— Մի սրա՛ն նայիր,
Ես նոր հագուստ եմ հագնում ամեն օր,
Իսկ նա ողջ տարին ինքն է ու մի շոր.
Մի՞թե մարդ է նա,
Ով տասնյակներով նոր շոր չունենա...—
Խիստ ճարահատված
Ընկերը ասաց.
— Դառն աշխատանքով տքնաջան քո հոր
Դու նոր զգեստ ես հագնում ամեն օր,
Դու նոր զգեստը դերձակն է կարել,
Բայց քո զգեստը դերձակն է կարել,
Մարդ համարվելու դու ի՞նչ ես արել։

# ԴԵՐՎԻՇԸ ԵՎ ՏՂԱՆ

ՍԻՐՎԵՆ ԱՐՇԱԿՈՒՆԻ

Մեզանից շատ դարեր առաջ Հին Արևելքում ապրում էր մի իմաստասեր դերվիշ։ Նա սիրում էր լինել զանազան երկրներում, հանդիպել ու վեճի մտնել անվանի իմաստուների հետ։ Եվ ահա մի օր էլ նա որոշեց գալ Հայաստանի մայրաքաղաքը։ Իրիկնապահին հասավ Անիի պարիսպներին, ներս մտավ դարպասներից և գնաց իջևանատներից մեկը։

Դերվիշը շատ էր հոգնած ու քաղցած։ Հոգնած ու քաղցած էր նաև իշուկը։

Իջևանատան բակում մի խումբ տղաներ էին խաղում։ Մեր ճամփորդը կանչեց նրանցից մեկին, որը հազիվ լիներ տասը տարեկան և, տալով մի պղնձյա դրամ, պատվիրեց.

— Որդյա՛կ, վերցրու այս դրամը և գնա ուտելիք բեր, որ ես հագեցնեմ իմ քաղցը, մի քիչ էլ քաղցր շերբեթ բեր, մի բան էլ ճարիր իշուկիս համար։ Թե կարող ես, բեր նաև մի այնպիսի բան, որ ես գիշերն զբաղվեմ, որովհետև տառապում եմ անքնությունից։

— Լա՛վ, պապի՛կ, հենց հիմա կբերեմ քո ուզածը,— ասաց տղան ու վազ տվեց՝ առանց դրամը վերցնելու։

Քիչ հետո վերադառնալով, նա բերեց մի մեծ ձմերուկ և ասաց.

— Ահա՛, պապի՛կ, քո ցանկացածը։

Օտարականը զարմացած նայում էր մեկ տղայի դեմքին, մեկ՝ ձմերուկին։

— Միայն ձմերո՞ւկ բերեցիր, որդի՛,—հարցրեց ծեր իմաստասերը։

— Այո՛, պապի՛կ։ Միջուկը կուտես, քաղցր հյութը կխմես որպես շերբեթ, կանաչ կեղևները թող անուշ անի իշուկը, իսկ կորիզները կցրեն քո ձանձրույթը, երբ անքուն մնաս,—ասաց տղան ու նորից թռչկոտելով հեռացավ։

Դերվիշը մտքի մեջ ընկավ։ Եթե տասնամյա տղան խելացի է այսքան, ապա ինչպիսի՜ն կլինեն Անիի բազմափորձ ծերունիները։ Ու նա որոշեց իզուր բանավեճի չբռնվել նրանց հետ։



# Աղվեսն ու թռչնապահը

ՀԱՅԿԱԶ ՄԵԼՅԱՆ



Աղվեսն ասաց թռչնապահին.
— Պարապ եմ ես ամբողջ տարին,
Լավ ավել է այս իմ պոչը,
Թույլ տուր ավլեմ թռչնանոցը։

— Քեզանից ի՞նչ հավաքարար,
Երեկ չէ՞ր, որ մի հավ տարար,
Ձեռքս առած բահ կամ մահակ՝
Քո ահից եմ դարձել պահակ։

Այսպես ասաց թռչնապահը,
Վրա բերեց ձեռքի բահը։
Էս աղվեսը լեղապատառ
Փախավ իսկույն, մտավ անտառ։

# ԲԱԴԻԿԸ

ԳՈՒՐԳԵՆ ԳԱԲՐԻԵԼՅԱՆ

Վերից անձրև է մաղում,
Բակում բադիկն է խաղում։
Կարենն ասաց տատիկին.
— Տատի՛, նայիր բադիկին,
Տե՛ս, թրջվում է նա դրսում,
Մենակ դողում է, մրսում.
Ասա, ինչպե՞ս համբերեմ,
Բա՞ չգնա՞մ տուն բերեմ...
— Ի՞նչ ես ասում, իմ անգին,
Բան չի լինի բադիկին։
Բա չգիտե՞ս, ա՛յ Կարեն,
Յուղ է քսում նա իրեն,
Իսկ յուղը ջուր չի պահում,
Վրայից ցած է սահում։
Ա՛յ թե ինչու նա լճում
Լողում, լողում, չի թրջվում։
— Վա՛յ, երանի բադիկին, —
Ասաց տղան տատիկին։



Նկ. ԱՐԻԱ ԲԱՅԱՋՅԱՆԻ

# ԵՐԲ ՉԿԱ ՍԱՐԴԸ

ՀՄԱՅԱԿ ԲԱԽՏԱՄՅԱՆ

*Այգին տանող նեղ կածանի եզրին ընկած քարի ճեղքից հազիվ գլուխը բարձրացրեց մանուշակը։*

*Արևի շողերը համբուրեցին նրան։*

*— Երջանիկ եմ, հաղթեցի։ — Եվ ավելի բացվեցին նրա կապույտ աչիկները։*

*Բայց նկատավ նրա չար հարևանը։*

*Սարդն իր ցանցը հյուսեց նրա թփի մոտ և խճճված թելերի տակ առավ կապուտաչյա մանուշակին։ Մանուշակը օր-օրի վրա թոշնեց։*

*Այգում իրիկնադեմին տուն էր դառնում Վահան դային։ Հոգնած էր, զայրացած՝ այգու վնասատուների դեմ։ Ծերունին տեսավ քարի վրա սարդի ոստայնը։*

*— Սա էլ է մոտենում այգուն, դավադրություն այս ցանցը։*

*Ուշադիր նայեց Վահան դային, տեսավ խեղճ մանուշակին, սիրտը մղկտաց։ Կռացավ, կոշտացած ձեռքով պոկեց ոստայնը, բռի մեջ ճզմեց սարդին ու ձեռքը քսեց լեշոտ քարին։*

*— Թող ամեն վնասատու միայն այսքա՛ն և այսպես հետք թողնի կյանքում, — շշնջաց նա։*

*Մանուշակը կարծես վերակենդանացավ։*

*— Բայց երանի սա վերջին սարդը լիներ, — այգուց տուն դառնալիս խորհում էր վաստակաբեկ այգեպանը։*



# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Շապիկը՝ նկ. ՍՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ


**Այս համարի հետ տրվում է հավելված՝ հոկտեմբերիկների համար:**

# Խաղեր



## Ի՞ՆՉ ՓՈԽՎԵՑ

Սեղանի վրա դնում ենք տարբեր առարկաներ (լուցկու տուփ, մատիտ, ծալր, դանակ, գիրք, թանաքաման և այլն): Սեղանը ծածկում ենք թերթով: Նա, ով



առաջինն է ուզում ստուգել իր դիտողականությունը, մոտենում է սեղանին, վերցնում է թերթը և 30 վայրկյանում (պետք է հաշվել մինչև 30) ծանոթանում է առարկաների և նրանց դասավորության հետ: Հետո շրջվում է մեջքով դեպի սեղանը: Այդ ժամանակ խաղավարը առարկաներից մի քանիսը տեղափոխում է: Խաղացողը շրջվում է, նորից 30 վայրկյանում նայում է առարկաներին և նրանց դասավորությանը: Այժմ առանց սեղանին նայելու խաղացողը պետք է ասի, թե որ առարկաներն էին տեղափոխված: Յուրաքանչյուր ճիշտ պատասխանի դիմաց նա շահում է մեկ միավոր, իսկ սխալ պատասխանի դեպքում շահած միավորներից հանում են դարձյալ մեկ միավոր: Սխալ է համարվում այն պատասխանը, երբ չտեղափոխված առարկան է հիշատակվում:

Երկրորդ անգամ, նախքան խաղը սկսելը, առարկաները այլ կերպ ենք դասավորում: Խաղին կարող են մասնակցել ջոկատի բոլոր պիոներները: Խաղի պայմանները բոլորի համար նույնը պետք է լինեն: Եթե առաջին խաղացողի համար տեղափոխում ենք 4 առարկա, ապա մյուսների համար էլ պետք է այդքան



տեղափոխել: Նշանակում է, հաղթելու համար անհրաժեշտ է շահել 4 միավոր:


Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆԶՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Լ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Ռ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41.
Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06,

ՎՖ 10218 Պատվեր՝ 1118: Տպաքանակ՝ 11900: Տպագրական 5 մամուլ: Ստորագրված է տպագրության 3/VII 1963 թ.: ՀՍՍՌ կուլտուրայի մինիստրության պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան փ., № 91:

Գինը 20 կ.




Նկ. Գր. Խանջյանի



# ԾԻԾԵՌՆԱԿ

*Սիրե՛ք, մանուկներ, ամեն ժամանակ*
*Խելքի ու մտքի այս նոր ձեռնարկը.*
*Ձեզ չի պատմելու ոչ մի ծիծեռնակ,*
*Ինչ որ պատմում է այս «Ծիծեռնակը»։*



# ԻՆՉ ԼԱՎ ԷՐ, ԽԱՂԸ ՉԸՆԴՀԱՏՎԵՑ

ԼՈՒՍԻԿ ԲԱՌՆԱԿՅԱՆ

Նկ. ԱՐՄԻՆԵ ԳԱԼԵՆՑԻ

Կեսօր է։

Մեր բակի թթենու տերևները չեն շարժվում։ Թթենու ստվերն այնպես է փոքրացել, որ հազիվ է ծածկում ներքևում դրված նստարանը։

Ես նստել եմ մեր պատշգամբում, Շահենի մայրիկն էլ նստել է իրենց պատշգամբում։ Երևի շատերն են նստել պատշգամբներում, որովհետև ներսում ավելի տոթ է։

— Ու՜ ու՜...

Ինքնաթիռն այնպես ցածրից է թռչում, որ թվում է թևերը քսվում են թթենու բարձր ճյուղերին։

Երկու տղա կկոցած աչքերով նայում են վերև։ Հետո վազելով գալիս են բակի մյուս տղաները, և փոքրիկ բլրակի վրա սկսվում է խաղը։

— Ուռա՜, ուռա՜,— գոռում են երեխաները, խփում իրար, վազում, հրում...

Ես նայում եմ խաղացող երեխաներին։

Շահենի մայրիկն էլ է նայում, բայց նա ամենից շատ նայում է իր տղային՝ Շահենին։ Եվ մեկ-մեկ էլ իմ կողմն է նայում։ Ես նրա հայացքում հպարտություն եմ տեսնում։ «Տես, ինչ քաջ տղա ունեմ» — կարծես ասում է նա։

Շահենը տեսնում է մեզ՝ ինձ ու իր մայրիկին։

— Շահե՛ն,— հանկարծ լսում եմ Շահենի մայրիկի ձայնը։

Շահենը չի պատասխանում։ Նա շալակած տանում է Հայկին, որն իրենից տարիքով բավական մեծ է։

Շահենի մայրիկը բարկանում է.

— Շահեն, քեզ հետ չե՞մ, ա՛յ տղա։

Շահենը չի պատասխանում։ Ինչպե՞ս կպատասխանի, երբ ծանրությունից հազիվ է կարողանում ոտքերը փոխել...

Շահենի մայրիկը բռունցքը խփում է պատշգամբի բազրիքին և թթված նայում ինձ։ Ես հասկանում եմ, թե ինչու է այդ-

քան շուտ վշտանում Շահենի մայրիկը…

— Մի՞թե չես ուզում լսել մորդ,— գոռում է նա…

Թթենու տակ Շահենը ներքև է իջեցնում Հայկին, պառկեցնում մեջքի վրա և դառնում մոր կողմը։ Բայց մայրը էլ չէր երևում։ Ես լսում էի նրա կոշիկների կրունկների թխկթխկոցը։ Նա շտապ-շտապ իջնում էր բակ։ Վերջապես դուրս եկավ նախամուտքից, ուղղեց ծաղկավոր խալաթի փեշերն ու գոռաց.

— Հիմա լսու՞մ ես դու ինձ։

Շահենը մանրաքայլ մոտեցավ. Նրա դեմքը կորել էր քրտինքի մեջ, կարմիր բազուկի նման կարմրել։ Նա թևքով սրբեց դեմքի քրտինքն ու մոտեցավ մորը.

— Ի՞նչ է, մայրի՛կ։

— Չէի՞ր լսում ձայնս։

— Լսում էի։

— Իսկ ինչո՞ւ չէիր պատասխանում։

— Չէի կարողանում…

— Այո՛, չէիր կարողանում, որովհետև շալակած տանում էիր քեզանից այդքան մեծ տղային։— Եվ նա բարձրացրեց աջ ձեռքը…

— Մայրի՛կ, մենք խաղում էինք,— դողդողաց Շահենի ձայնը։

— Լավ էիք անում, իսկ ինչո՞ւ էիր շալակել Հայկին։

— Մայրի՛կ, մենք «կռիվ» էինք խաղում…

— Լավ, հասկացանք, իսկ դու ինչո՞ւ էիր շալակել Հայկին…

— Ախր, նա վիրավոր էր,— շնչահեղձ լինելով արտասանեց Շահենն ու լռեց։ Մայրիկի ձեռքը վայր իջավ։ Նա հանկարծ նայեց վեր, ես ու Շահենի մայրիկը ժպտացինք։ Քթի տակ ծիծաղեց նաև Շահենն ու մոր թևի տակից դուրս պրծնելով՝ վազեց խմբված տղաների մոտ…

Ի՜նչ լավ էր, խաղը չընդհատվեց։









# ԾԻՏԻԿՆ ՈՒ ԾՈՎԻԿԸ

ԳԵՂԵՑԻԿ ՄՈՎՍԻՍՅԱՆ

— Ծի՛վ-ծի՜վ, ծի՛վ-ծի՜վ, Ծովինա՛ր,
Թաքուն-մաքուն ի՞նչ կերար,
Զասացիր էլ մայրիկին՝
Բաժին հանի ծիտիկին։

— Վա՜յ, ծիտի՛կ ջան, ինձ ների՛ր,
Որ քեզ բաժին չբերի,
Մոռացել եմ, հավատա,
Հիմա բաժինդ կտամ...

Ու ծիտիկի սեղանին
Լցրեց ցորեն ու գարի։
Մեր ծիտիկը կուշտ կերավ,
Թևին տվեց ու թռավ։






Գ. ՍԱՐԳԻՍ

Նստել էի ես այգում,
Ծաղիկների մեջ պայծառ։
Եվ մժղուկներն ասացին.
— Այս ի՞նչ սար է, այս ի՞նչ սար։

Եկավ թիթեռ
Մի լուին,
Իջավ ուսիս
Բլուրին։
Երբ որ ձեռքս
Բարձրացավ,
Թիթեռնիկը
Վախեցավ։

Թռավ, եկավ
Մի ճպուռ,
Նայեց, ապշեց,
Մնաց լուռ։
Երկու մոծակ
Վիճեցին.
— Զուտե՞նք այս սարն,—
Ասացին։

Եկավ մրջյունն,
Ինձ գտավ
Եվ իմ թևքի
Մեջ մտավ...
Ո՞վ գիտե ինչ
Մտածեց,
Ամբողջ ուժով
Ինձ կծեց։

— Իջի՛ր, հերո՛ս,
Դարձիր ե՛տ,
Այդ ու՞մ հետ ես
Քեզ չափում,
Բա՜րձր, բա՜րձր
Սարի հե՞տ։





Քեզ կճզմեմ
Հանկարծ ես,
Մրջյու՛ն, հանգիստ
Պահիր քեզ:

Ես ասացի.
— Սար եմ ես,
Բայց բարի եմ
Մաղթում ձեզ:
Որովհետև, իմացեք,
Բարեկամնե՛ր իմ արի,
Ես մի սար եմ
Շատ բարի:



Նստել էի ես այգում.
Ծաղիկների մեջ պայծառ:
Եվ մժղուկներն ասացին.
— Այս ի՞նչ տեսակ
Տարօրինակ
Սար է սա:

*Թարգմ. Մ. ՀԱԿՈԲՅԱՆ*




ՎԱՀԱԳՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ

Հինգ տարեկան Գագիկը բակում խաղում էր ավազի վրա: Նրան մոտեցավ Ալիկը:

— Տե՜ս,— ասաց նա և ձեռքը առաջ պարզեց:

Գագիկը նայեց և ոչինչ չտեսավ:

— Լա՛վ նայիր, — ասաց Ալիկը:

Գագիկը վիզը ծգեց և նրա ափի մեջ, հենց մատների տակը տեսավ փոքրիկ վարդագույն կոշտուկներ:

— Կոշտուկներ են, — հպարտությամբ ասաց Ալիկը:

— Ջե՞ն ցավում:

—Ո՛չ,— ասաց Ալիկը,— նույնիսկ այսպես ավելի լավ է:

Գագիկը լեզուն շարժեց բերանի մեջ:

— Իսկ շոշափել կարելի՞ է:

— Խնդրե՛մ, — ասաց Ալիկը, — մանկապարտեզում բոլոր տղաներն էլ խնդրում էին: Նրանք էլ շոշափեցին:

Գագիկը մատը զգուշությամբ կպցրեց կոշտուկին: Կոշտուկը ողորկ էր և ամուր: Դա շատ զարմանալի էր:

— Բավական է, — ձեռքը ետ քաշեց Ալիկը,— ախր կոշտուկները կարող են մաշվել:

Գագիկը մտածեց և քթի ծայրը քոր եկավ:

— Գիտե՞ս, — ասաց Ալիկը, — ես խարտոցով ուզում էի մեխը կտրել: Խարտոցեցի, խարտոցեցի, մեխը չկտրվեց: Բայց դրա փոխարեն կոշտուկներ առաջացան: Ախր եթե մեխը երկու կտոր անես, բոլորովին էլ պետք չի գա: Իսկ կոշտուկները ավելի լավ են:

Գագիկը նորից մտածեց և քիթը նորից քոր եկավ: Նա ուզում էր հարցնել. «Իսկ կոշտուկները ինչի՞ համար են պետք գալիս», բայց Ալիկի մայրիկը կանչեց, և նա վազեց տուն:

Գագիկն էլ տուն գնաց։

Մայրիկը թեյ լցրեց և ասաց.

— Նստի՛ր և թե՛յ խմիր։

Գագիկը հարցրեց.

— Մա՛, մենք խարտոց ունե՞նք։

— Ո՛չ, — ասաց մայրիկը, — անմիջապես թեյդ խմիր։

Գագիկը նստեց և թեյը թափեց ծնկներին։ Նա դատարկեց կիսատված բաժակը, հեռացավ սեղանից և սկսեց ձեռքերով թմբկահարել դուռը։

— Վե՛րջ տուր, — բարկացավ մայրիկը։

Գագիկը թողեց դուռը և սկսեց ձեռքերը խփել իրար։ Բայց միևնույնն է, կոշտուկներ չառաջացան, իսկ մայրիկը նորից բարկացավ։

Այդ ժամանակ Գագիկը ծլկեց մյուս սենյակը։ Նա վերցրեց քրոջ քանոնը և սկսեց պտտեցնել ձեռքի մեջ։ Քույրը բռնեց քանոնի մյուս ծայրից և փորձեց խլել։ Աղմուկի վրա ներս մտավ մայրիկը։ Նա քանոնը վերցրեց Գագիկի ձեռքից ու ասաց, որ մեծ տղա է, բայց անկարգություն է անում։ Հետո մայրիկը Գագիկին տվեց փոքրիկ բահը և ուղարկեց բակ, փոքրիկ թթենու տակի հողը փխրեցնելու։

— Արդեն մեծ տղա ես, — ասաց մայրիկը, — և պետք է հայրիկին օգնես։

Գագիկը գնաց։ Շուրջը նայեց, բակում ոչ ոք չկար։ Եթե որևէ մեկը լիներ, նա կթողներ բահը և կվազեր խաղալու։ Բայց ոչ ոք չկար, և Գագիկը ստիպված սկսեց փորել։

Հողը պինդ էր, և Գագիկը հոգնեց։ Նա շուրջը նայեց, էլի ոչ ոք չկար։ Գագիկը մայկան խրեց տրուսիկի մեջ ու շարունակեց փորել։ Փորեց, փորեց, ձեռքը սկսեց ցավել։ Գագիկը նայեց և ի՜նչ։ Աջ ձեռքի ցուցամատի տակ կար մի փոքրիկ կոշտուկ։ Ճիշտ է, շատ փոքրիկ, բայց ամենաիսկական կոշտուկ։



Նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ

2

Գագիկը տուն եկավ։

— Ապրե՛ս, — ասաց մայրիկը, — իսկ հիմա լըվացվիր։

— Ո՛չ, — գլուխը թափ տվեց Գագիկը։

— Ինչո՞ւ, — զարմացավ մայրիկը։

— Իմ ձեռքերը մաքուր են։

Բայց Գագիկի ձեռքերը կեղտոտ էին, և մայրիկը նրան տարավ լվացարանի մոտ։ Գագիկը սկսեց զգուշությամբ լվացվել։ Նա վախենում էր, թե կոշտուկը կմաշվի։ Բայց լվացվեց պըրծավ, իսկ կոշտուկը մնաց իր տեղում։

Գագիկը մի ժամի չափ զբաղվեց իր կոշտուկով։ Հետո սկսեց ձանձրանալ։ Բակում ոչ ոք չկար։ Քույրը՝ Լուսիկը երկրորդ դասարանում էր սովորում և իր հետ չէր խաղում։

Գագիկը մի քիչ սենյակում թրև եկավ ու որոշեց նկարել։ Նա վերցրեց թուղթ ու մատիտ և նստեց սեղանի մոտ։ Բայց արի ու տես, որ մատիտի ծայրը ջարդված էր։

Գագիկը գնաց մայրիկի մոտ։ Բայց մայրիկը ճաշ էր պատրաստում։ Հետո գնաց Լուսիկի մոտ, իսկ Լուսիկը ասաց.

— Ինքդ սրիր։

Գագիկը բարկացավ և որոշեց ինքը սրել։ Նա վերցրեց փոքրիկ դանակը, բարձրացավ աթոռի վրա ու դունչը հենած սեղանին՝ սկսեց սրել։ Սըրեց, սրեց և մեկ էլ, հո՛պ, ծայրը կոտրվեց։ Գագիկը նորից սկսեց սրել, և նորից կոտրվեց։ Հետո նորից սրեց, և էլի կոտրվեց։ Գագիկը սրում էր,



սրում և, երբ արդեն քիչ էր մնում, մատիտի ծայրը ջարդվում էր։ Մատիտից արդեն մնացել էր մի փոքրիկ կտոր, իսկ Գագիկը շարունակում էր սրել։ Նա հիմա նույնիսկ լեզուն դուրս էր հանել։ Բայց հանկարծ պատահեց մի զարմանալի բան։ Գագիկը սրելը վերջացրեց, իսկ մատիտը չէր կոտրվել։ Գագիկը աչքերին չէր հավատում։ Մնացած թռավ աթոռից և վազեց մայրիկին ցույց տալու։

Ճիշտ է, սեղանը ամբողջովին ծածկվել էր մատիտի կտորտանքներով, իսկ մատիտը այնքան փոքր էր, որ հազիվ էր ձեռքի մեջ երևում, բայց սրված էր հիանալի, ճիշտ այնպես, ինչպես հայրիկն էր սրում։

3

Գագիկը նկարելը վերջացրեց, իսկ սեղանին թափված էին մատիտի կտորտանքները։ Նա փչեց, տաշեղները թափվեցին հատակին։

— Հավաքի՛ր, — ասաց Լուսիկը, — թե չէ մայրիկին կասեմ։

Գագիկը հավաքեց ու տարավ լցրեց պահարանի հետևը։

Հետո Գագիկը բակ իջավ։

Նստարանին նստած էր հարևան Աչիկը, իսկ Աչիկի կողքին մի փոքրիկ տիկնիկ։ Գագիկը հարմար տեղավորվեց նստարանի վրա ու հարցրեց.

— Ինչո՞ւ քո տիկնիկը շորեր չունի։

— Ես լվացել եմ նրա շորերը։ Երբ չորանան, կհագցնեմ։

— Իսկ մազերը ինչո՞ւ սանրված չեն, — նորից հարցրեց Գագիկը։

— Սանրված են, — պատասխանեց Աչիկը, — սա նոր ձևի սանրվածք է։ Միայն թե այնպիսի սանրվածք, որ թվում է սանրված չէ։

Գագիկը ոչինչ չհասկացավ։ Նա միայն ցանկանում էր որևէ բան ասել և ասաց.

— Ես այսօր թթենու տակի հողը փխրեցրի, առանց ուրիշի օգնության։ Եվ հետո, տե՛ս, ձեռքս ինչ եղա՛վ։

Աչիկը նայեց նրա ձեռքի կոշտուկին և զարմացավ։

— Վա՜յ, — ասաց նա։

— Դու կուզեի՞ր քո ձեռքին էլ լինեն, — հարցրեց Գագիկը։

— Ո՛չ։

— Ինչո՞ւ։

— Որովհետև վատ է։

Գագիկը մտածեց, թե ինչու է վատ։ Եվ քանի որ մտածեց, քթի ծայրը քոր եկավ։ Նա տխրեց իր կոշտուկի համար և որոշեց ավելի լավ բան ասել։

— Ես այսօր մատիտ սրեցի։ Հայրիկը տանը չէր, մայրիկը ճաշ էր եփում, Լուսիկը չուզեց, և ես սրեցի։

— Դա ինչ է ո՜ր, — ուսերը թափ տվեց Աչիկը, — մի անգամ ես մի ամբողջ տուփ գունավոր մատիտներ սրեցի։

— Ստում ես, — ասաց Գագիկը, — մի ամբո՜ղջ տուփ։

— Այո՛, վեց հատ։

— Իսկ ինչպե՞ս սրեցիր, — վրա տվեց Գագիկը։

— Սովորական. վերցրեցի դանակը և սրեցի։

— Հի՛, հի՛, այդ գիտենք, — ծիծաղեց Գագիկը, երևի ծուռտիկ-մուռտիկ, կլոր ծայրով։

— Ո՛չ, — նեղացավ Աչիկը, — շատ սիրուն։ Ուղիղ և սուր ծայրով։

Գագիկը ամաչեց իր ծիծաղելու համար։ Բայց հանկարծ հիշեց և հարցրեց.

— Իսկ դու ո՞րտեղ թափեցիր կտորտանքները։

— Արկղում։

— Իսկ ես տարա և լցրեցի պահարանի հետևը։

— Ինչո՞ւ, — զարմացավ Աչիկը։

Գագիկը նեղն ընկավ։ Նա ուզում էր պարծենալ, իսկ հիմա չգիտեր ինչ պատասխանել։

— Որովհետև, — ասաց նա, — որովհետև արկղում բոլորն էլ կարող են թափել, իսկ պահարանի հետևը ոչ մեկի մտքով էլ չի անցնի։

— Դա վատ է, — մեծավարի ասաց Աչիկը, — ուրեմն ձեր տանը մկներ կլինեն։

— Մկնե՞ր, — աչքերը չռեց Գագիկը։

— Այո՛, որտեղ աղբ կա, այնտեղ մկներ են լինում։

Գագիկը վախեցավ։ Նա մկներից շատ էր վախենում։

— Դե ես շատ քիչ լցրեցի։ Շա՜տ քիչ, միայն մի քանի տաշեղ։

— Միևնույնն է, — շուրթերը ուռեցրեց Աչիկը, — որտեղ թեկուզ մի քիչ աղբ լինի, այնտեղ անպայման մկներ կլինեն։ Ձեր պահարանի հետևը մկներ կլինեն։

Գագիկը մտածեց։ Կգնա տուն և պահարանի հետևը կմաքրի։ Անպայման կմաքրի, միայն թե մկներ չլինեն։

— Ես գնացի տուն, — ասաց Աչիկը, — արդեն երեկո է, և իմ տիկնիկը կարող է մրսել։

Գագիկը մի քիչ էլ նստեց նստարանին, իսկ հետո ելավ ու քայլեց։ Գետնի վրա մի պատռված գնդակ էր ընկած, Գագիկը ոտքով հարվածեց։ Գնդակը կպավ դիմացի պատին ու վայր ընկավ։ Եվ քանի որ պատռված էր, չգլորվեց, այլ մնաց ընկած հենց այդտեղ, պատի տակ։

Գագիկը վազեց տուն, իսկ մայկան դուրս էր թռել տրուսիկի տակից։ Տուն մտնելու համար նա պետք է յոթ աստիճան բարձրանար և քանի որ հինգ տարեկան էր, սկսեց բարձրանալ մի ոտքի վրա ցատկելով։

Տանը նա բոլորից թաքուն պահարանի հետևից հանեց կտորտանքները և լցրեց արկղը։ Հետո բարձրացավ հայրիկի ծնկներին և պատմեց, թե այսօր ինչ է արել։ Բայց քանի որ հինգ տարեկան էր, հոգնեց և պառկեց քնելու։





## ԳԱՐՈՒՆ

Դաշտ ու անտառ
Հագան կանաչ,
Ջրում լսվեց
Առվի կարկաչ:
Տրակտորն է
Հողը հերկում,
Ամենուրեք
Ձայնում կկուն:
Ջա՜ն, իմ երկրում՝
Շեն ու խաղաղ,
Նորից գարուն
Բացվեց ուրախ։

ԳՈՒՐԳԵՆ ԴԱՆԻԵԼՅԱՆ
Գյուղ Հաղբատ

## ԳՐԱՊԱՅՈՒՍԱԿԸ

Ամառները այդ օրվա
Մայրս ասել էր լվա։
Լվանում եմ, լվանում,
Բակից ուրախ ձայն առնում
Ու վազում եմ դուրս հանկարծ՝
Դասն ու տունը մոռացած։

digitised by A.R.A.R.@

Թուչկոտում եմ մեր բակում,
Խաղում եմ ու աղմկում,
Հետո փոշոտ ու հոգնած
Տուն եմ վազում, և հանկարծ
Պահարանի դարակից
Մի խեղճ ձայն է դիմում ինձ.
— Ես գդալն եմ արծաթե,
Ինձ չե՞ս հիշում դու միթե,
Քույրիկներիս մաքրել ես,
Փայլեցրել դրել ես,
Նրանք ինձ չեն թողնում մոտ,
Ես ճաշոտ եմ ու յուղոտ։
Հիմա մայրիկդ կգա,
Մի լավ պատիժ քեզ կտա,
Որ իմ փոքրիկ քույրերից
Բաժանել ես այսօր ինձ։
...Թե չես ուզում պատժեն քեզ,
Ինձ էլ մաքրիր նրանց պես։

ՀԱՍՄԻԿ ԱԼԱՋԱՆ
(Երևան, Աղայանի անվան դպրոց,
3-րդ դասարանի աշակերտուհի)



# ՊԱՏՄՎԱԾՔՆԵՐ ԿԱՐԻՆԵԻ ՄԱՍԻՆ

ԼԻԱ ԲԱԼԱԳՅԱՆ

Կարինեն սպիտակ, մաքուր թուղթ վերցրեց ու նկարեց գեղեցիկ, վարդագույն ծաղիկներ, կապույտ երկինք և պայծառ արև։ Վերջացնելով նկարելը, Կարինեն վազեց մայրիկի մոտ.

— Մամա՛, տե՛ս, ինչ եմ նկարել։

— Օ՜, ինչ գեղեցիկ ծաղիկնե՜ր են,— ուրախացավ մայրիկը։

— Իսկ հիմա ի՞նչ նկարեմ։

Մայրիկը մտածեց ու ասաց.



— Հիմա նկարիր մի մկնիկ և մի հատ էլ փիսիկ։ Մկնիկը փախչում է, իսկ փիսիկը վազում է, որ բռնի։

Կարինեն լուռ լսեց մայրիկին։ Նրա դեմքը շատ մտախոհ արտահայտություն ստացավ։

— Մամա՛,—վերջապես ասաց նա,— ես մկնիկ կարող եմ նկարել, փիսիկ էլ, իսկ վազել ու փախչել ո՞նց են նկարում, ես չեմ կարող։

Կարինեն ուշադիր նայում էր կապույտ երկնքին։ Այնտեղ արևի ճառագայթների տակ փայլփլում էր մի ինքնաթիռ. կարծես սահում էր երկնքի վրայով։ Հայրիկը նկատեց, թե ինչպես Կարինեն շունչը պահած հետևում է ինքնաթիռին։

— Կարինե՛, ուզու՞մ ես ինքնաթիռ նստել։
Աղջիկը մտախոհ նայեց հայրիկին և գլուխը բացասաբար շարժեց։
— Ինչո՞ւ,— զարմացավ հայրիկը։



— Հանկարծ թելը կկտրվի ու ինքնաթիռը վայր կընկնի,— լուրջ ասաց Կարինեն։

Մի անծանոթ մորաքույր Կարինեին կոնֆետ տվեց։
— Ամո՛թ քեզ, ինչո՞ւ վերցրիր կոնֆետը,— նկատողություն արեց նրան մայրիկը։
— Մորաքույրը չգիտի, որ դու թույլ չես տալիս ուրիշից կոնֆետ վերցնել,— շրթունքները ուռցնելով բարձրաձայն ասաց Կարինեն և ափի մեջ պինդ սեղմեց քաղցրավենիքը։

— Իսկ ի՞նչ պետք է ասել մորաքրոջը,— կարմրելով ասաց մայրիկը։
Կարինեի աչիկները փայլեցին։ Նա մոտեցավ անծանոթ մորաքրոջը և, խորամանկ նայելով մայրիկին, արագ-արագ ասաց.
— Մորաքո՛ւյր, էլի եմ ուզում կոնֆետ։

Քեռի Հակոբը Կարինեի համար մի գեղեցիկ տուն նկարեց։
— Ահա սրանք էլ պատուհանները, սա էլ դուռը,— նկարելով ասում էր քեռին,— իսկ սրանք էլ ծխնելույզները։
Դե, ծխնելույզը առանց ծխի չի լինի, դրա համար էլ քեռի Հակոբը սև մատիտով թանձր ծուխ նկարեց, որը բարձրանում էր մինչև վերև, մինչև թղթի ծայրը։
Հանկարծ Կարինեն երկու ձեռքով պինդ փակեց աչքերը։
— Ի՞նչ պատահեց,— զարմացավ քեռի Հակոբը։
— Ծուխը աչքերս մրմռացրեց,— արցունքները սրբելով ասաց Կարինեն։



# Գյուղի աստղագուշակը

(Իտալական հեքիաթ)

Մի անգամ թագավորը կորցրեց իր ամենաթանկարժեք մատանին։ Նա ամեն տեղ որոնեց, բայց մատանին չկար ու չկար։ Թագավորը հրաման արձակեց. «Եթե մի որևէ աստղագուշակ իմ մատանին գտնի, ես նրան մեծ պարգևներ կտամ»։
Մի աղքատ գյուղացի, որը ո՛չ գրել գիտեր, ո՛չ էլ կարդալ, իմացավ թագավորի հրամանի մասին ու շատ երկար մտածեց. «Մի՞թե դժվար բան է աստղագուշակ ձևանալը, փորձեմ, էլի, ինչ կստացվի, թող ստացվի»։
Գյուղացի Գամբարան ներկայացավ պալատ, խոնարհվեց թագավորի առաջ։ Թա-



գավորը լսեց նրան, հետո փակեց մի սենյակում, որտեղ փափուկ անկողին կար, մի սեղան, վրան դրված աստղագիտության հաստափոր գիրքը, կողքին գրիչ, թուղթ ու թանաքաման:

— Ահա բոլոր հարմարությունները, աստղերի միջոցով գտիր, թե որտեղ է իմ մատանին, եթե չգտնես՝ գլուխդ կթռցնեմ,— ասաց թագավորը:

Գամբարան անվստահ նստեց սեղանի մոտ և սկսեց թերթել գիրքը, բայց պետք էր բանիմաց ձևանալ, գիտնականի նման: Քանի որ Գամբարան գրել չգիտեր, գրքի վրա տարօրինակ նշաններ էր գծում: Թագավորի սպասավորները, որ օրական երկու անգամ գյուղացուն ճաշ էին մատուցում, այն տպավորությունն ստացան, որ իրենց առաջ նստած է մի մեծ աստղագուշակ և նա անպայման կգտնի մատանին: Ահ ու սարսափը պատեց սպասավորներին: Չէ՞ որ նրանք էին գողացել թագավորի մատանին: Եվ սրանք սկսեցին մեծ հարգանքով վերաբերվել աստղագուշակի հետ:

Գամբարան իսկույն գլխի ընկավ, որ սպասավորները տեղյակ են մատանուց և որոշեց նրանց միջոցով էլ գտնել այն: Մի անգամ ճաշի ժամանակ նա թաքնվեց մահճակալի տակ: Ներս մտավ առաջին սպասավորը և ակնածանքով նայելով շուրջը, ճաշով լի պնակը դրեց սեղանին: Գամբարան մահճակալի տակից խորհրդավոր ձայնով ասաց. «Այս մեկն է»: Սպասավորը սարսափահար դուրս թռավ սենյակից, մտավ երկրորդը: Խորքից նորից լսվեց նույն ձայնը. «Այս մեկն է»: Սա նույնպես դուրս փախավ: Վերջապես մտավ երրորդը, և նորից նույն ձայնը: Սպասավորները հավաքվեցին խորհրդի:

— Մենք արդեն բռնված ենք: Աստղագուշակը այդ մասին կհայտնի թագավորին, և մեզանից ոչ ոք կենդանի չի մնա:

Նրանք որոշեցին գնալ աստղագուշակի մոտ և ամեն ինչ պատմել:

— Մենք աղքատ մարդիկ ենք,— ասացին սպասավորները,— եթե դուք թագավորին հայտնեք այն մասին, ինչ գտաք ձեր գուշակության շնորհիվ, մենք կորած ենք: Վերցրեք այս ոսկիներով լի քսակը և ազատեք մեզ:

Գամբարան վերցրեց քսակն ու խոստացավ սպասավորներին չմատնել:

— Բայց դուք պետք է անեք այն, ինչ պատվիրում եմ ձեզ, թագավորի մատանին դրեք ներքնահարկի միջանցքում փռված գորգի տակ, մնացածը ես գիտեմ:

Հետևյալ օրը Գամբարան ներկայացավ թագավորին:

— Ձերդ մեծություն, մատանին գտել եմ աստղերի շնորհիվ։ Ներքնահարկի գորգի տակ էր։

Թագավորը հրամայեց բարձրացնել գորգը ու ադամանդը շողշողաց արևի նման։ Գամբարան վարձատրվեց մեծ հարստությամբ, և նրա պատվին թագավորը մեծ ճաշկերույթ կազմակերպեց։

Գամբարան նստած էր ամենապատվավոր տեղում՝ թագավորի կողքին։ Նրա առաջ մի պնակ էր դրված՝ լիքը խեցգետիններով։ Կերակրի այդ տեսակը թագավորի սեղանի ամենալավ զարդն էր։ Բայց ինքը թագավորն էլ չգիտեր դրա անունը։

— Դու որ աստղագուշակ ես, ապա պետք է գուշակես այս պնակի մեջ գտնըվող կենդանու անունը,— գյուղացուն դիմեց թագավորը։

Խեղճ գյուղացին, որ երբեք կյանքում խեցգետին չէր տեսել և ոչ էլ լսել նրա անունը, ինքն իրեն շշնջաց.

— Հե՜յ, Գամբարա, Գամբարա, վերջդ վատ եղավ։

— Կեցցես,— բացականչեց թագավորը, որը առաջին անգամ էր լսում գյուղացու անունը և բարձրացրեց գինով լի բաժակը։— Ապրես, ճիշտ գուշակեցիր, սրանք գամբարա են կոչվում, իրոք որ դու աշխարհի ամենամեծ աստղագուշակն ես։

Իտալերենից թարգմանեց՝ Հ. ՍՐԱՊՅԱՆ



Նկ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

ԳԵՎՈՐԳ ԳԵՂՈՒՆԻ

# ԾԱՓԻԿ-ԾԱՓԻԿ

(Շրջան կազմած)

Ծափիկ, ծափիկ, ծափիկ տանք,
Այսպես դեպի առաջ գանք.
Ծափիկ, ծափիկ, ծափիկ տանք,
Այսպես նորից ետ գնանք։

Ծափիկ, ծափիկ, ծափիկ տանք,
Այսպես աջ ու ձախ դառնանք։
Ծափիկ, ծափիկ, ծափիկ տանք,
Այսպես ուրախ միշտ խաղա՜նք։



# „ԿԱ

ԳՐԻԳՈՐ ՀԱԿՈԲՅԱՆ

Այդ օրը Համոիկի ուրախությանը չափ ու սահման չկար։ Նա ամբողջ ժամանակ թռչկոտում էր և տանն ամենքին ասում.

— Մայրի՛կ, ես արդեն պիոներ եմ...

— Հայրի՛կ, ես ընդունվեցի պիոներական...

— Պապի՛կ, ես արդեն պատանի լենինյան...

Սկզբում ամենքը նրա հետ ուրախանում էին, և մեկը նրա գլուխն էր շոյում, մյուսը այտն էր համբուրում, երրորդը՝ փոքրիկ ձեռքը բռնում շնորհավորում, և ամենմեկը մի բան էր նվիրում՝ քաղցրավենիք, խնձոր, ընկույզ, ալանի... Բայց երբ Համոիկը նորից սկսեց սրան-նրան որպես նորություն պատմել արդեն մի քանի անգամ ասածը, մայրիկը մի փոքր բարկացավ։

— Դե բավական է շատախոսես,— ասաց նա։— Մի բանը քանի՞ անգամ կարելի է...

Թեև Համոիկը լավ գիտեր, որ մայրիկը շատախոսություն չի սիրում, բայց ամեն

# ՓԻՍԻԿ



Ա՜յ իմ փիսիկ,
Իմ լավ փիսիկ,
Ի՞նչ ես նստել
Սուսիկ-փուսիկ։
Թաթիկդ տուր,
Որ ես ու դու
Գնանք խաղանք
Մուկն ու կատու։

# ԱՅԾԻԿ



Այծիկ, դու որ պապիկ չես,
Մորուքն ո՞վ է տվել քեզ.
Քեզ մորուքը չի սազում,
Ասա՛, ինչո՞ւ չես խուզում։

Ունեմ խնձոր կարմրաթուշ,
Քաղցր ծիրան, համեղ նուշ։
Անուշ ելակ ու մորի,
Որ թուշիկս կարմրի։

# ՔՉԱԽՈՍ ԷՄ,,



անգամ մոռանում էր։ Եվ որպեսզի էլ չըխոսի, նա բերանը ձեռքով փակեց ու գընաց մյուս սենյակը՝ հայրիկի մոտ։

— Ի՞նչ է պատահել։ Ատամդ ցավո՞ւմ է,— հարցրեց հայրիկը։

— Ո՛չ, չի ցավում,— մատների արանքից պատասխանեց Համիկը։

— Բա ինչո՞ւ ես բերանդ փակել։

— Որ չխոսեմ։ Մայրիկը շատախոսությունը չի սիրում։

— Կարելի է առանց բերանը փակելու էլ չշատախոսել։

— Երբ բերանս չեմ փակում, մոռանում եմ...



Այդ միջոցին մայրիկը ներս մտավ։

— Հը, դու նորի՞ց ես շատախոսում,— բարկացկոտ ասաց նա աղջկան։

— Չէ՛, ես չեմ շատախոսում,— մատների արանքից պատասխանեց Համիկը։

— Բա ի՞նչ ես անում։

— Ես... ես... քչախոսում եմ...



# Անմոռանալի Բարձիկը

ՄԱՐԱ ՄԵՀՐԱԲՅԱՆ

Նկ. ԱԻԴԱ ԲՈՅԱՋՅԱՆԻ

Աշխարհում բարձեր շատ կան՝ մանկական բարձեր, բարձեր մեծերի համար։ Բայց խոսքս ոչ թե դրանց, այլ՝ քիչ աչքի ընկնող, բայց շատ պետքական բարձիկի մասին է, դպրոցական բարձիկի, որից կա և քո դասարանում։



Այն բարձիկը, որի մասին ուզում եմ պատմել, լցված էր ոչ թե բրդով կամ բամբակով, ինչպես դասարանական բոլոր բարձիկները, այլ... բայց ինչո՞ւ շտապենք։

Ուսուցչուհին մտավ չորրորդ «ա» դասարանը։ Նա իսկույն նկատեց, որ քիչ առաջ դասարանում ինչ-որ բան է պատահել։ Նա այդ հասկացավ երեխաների հայացքներից, որովհետև համարյա բոլորի դեմքերին սառել էր չար ժպիտը. իսկ աչքերը... Օ՜, ընկեր Համլիկը լա՜վ էր հասկանում այդ աչքերի լեզուն։

Միայն Ելենան էր հոնքերը տակից թըշնամանքով նայում տղաներին։

Ընկեր Համլիկը դիտավորյալ ոչինչ չըհարցրեց, խոսակցության համար ոչ մի առիթ չտվեց, իսկ առիթը պատրաստ կանգնել էր նրա կողքին. աշակերտներն էլ հենց դրան էին սպասում։ Նա քերականական մի քանի վարժություն գրեց գրատախտակին, բացատրեց և դիմեց դասարանին.

— Հասկացա՞ք, կարո՞ղ եմ մաքրել։

Ապա մոտենալով լուսամուտին, վերցրեց բարձիկն ու սկսեց մաքրել գրատախտակը։

Երեխաները նախ միմյանց նայեցին, հետո նայեցին բարձին։ Նորիկը աչքով արեց։

— Կո՜շտ է,— տեղից խոսեց Աշոտը, որը դասարանի ամենաանհանգիստ աշակերտն էր համարվում։ Ուսուցչուհին շոշափեց բարձիկը։

— Խը՜շ, խը՜շ, խը՜շխը՜շ...

ԹԷ ԻՆՉՊԵՍ ՄՈՒԿԸ ԿԱՏՈՒ ԲՌՆԵՑ





Նա կկոցեց աչքերը և նորից շոշափեց։

— Խո՞շ, խո՞շ, խո՞շխոշ...

Դասարանը միանգամից աշխուժացավ, ասես մեկը միանգամից հազար քար նետեց լճակը։ Ջուրը ալիք տվեց և օղակ-օղակ նահանջեց դեպի սարերը։

— Մազի՞ց է, մազի՞ց։

— Ո՛չ, գարման է։

— Դա ինչ բարձիկ է ո՞ր։

Երեխաները ոգևորված վրա էին տալիս։

Ելենան կծկվեց, փոքրացավ... Ուսուցչուհին նայեց դասարանին։ Բոլորը լռեցին։ Լուսամուտի ապակու վրա բզզաց մի ճանճ։

— Ո՞վ է կարել այս բարձիկը։

Նորից փշրվեց ջրի հայելին։

— Ելենա՜ն, Ելենա՜ն։

— Այո՛, այո՛, նա է կարել այդ բարձիկը։

— Այո՛, Այո՛, նա է կարել այդ բարձիկը։

Ելենան լարված հայացքով նայեց ուսուցչուհուն.

— Դու՞, Ելենա՛։

Ելենան ոտքի կանգնեց։

— Դու այսպիսի շնո՞րհք ունես. լավ ես մտածել, ծովախոտը իր մեջ կավճափոշի չի պահում. տե՛ս, ձեռքիս վրա կավճի հետք չմնաց։

Ելենան ձեռքերով ծածկեց դեմքը։

Դասարանի վրա ասես դույլով սառը ջուր լցրին։

Ուսուցչուհին մոտեցավ լուսամուտին, բարձիկը ցած դրեց։

Մի քանի աղջիկ հաղթական ժպիտներով նայեցին տղաների կողմը։




ԳԵՎՈՐԳ ԱԼԱԳՅՈԶՅԱՆ



Ձեռքին ելակ,
Ոտքին ելակ,
Ե՛վ շուրթերին,
Ե՛վ շորերին,
Ե՛վ քթիկին,
Ե՛վ այտիկին...
Ո՞վ էր տեսել,
Որ ելակը
Ուտեն դնչով
Ու ականջով,
Ուտեն ոտքով,
Աչքով,
Ունքով...
Վայ-վա՜յ, վա՜յ-վայ,
Մեր Ցոլակը
Ողջ ելա՜կ է...

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ







# Նկարում են մանուկները



Հովիվ — ՍՏԵՓԱՆՅԱՆ ԱՇՈՏ
(Երևան, 10 տ.)



Պար — ՓԱՐՍԱԴԱՆՅԱՆ ԱՍՏՂԻԿ
(Երևան, 5 տ.)



Ծառ — ԱՌԱՔԵԼՅԱՆ ԱՆԱՀԻՏ
(Երևան, 9 տ.)



Ծաղիկ — ՄԱԼԽԱՍՅԱՆ ՆՈՒՇԻ
(Արտաշատ, 7 տ.)

**Տրվում է անվճար «Պիոների» 7-րդ համարի հետ**



## ԱՄԵՆԱԳԵՏԸ

*Սիրելի՛ երեխաներ, ձեզանից յուրաքանչյուրը անգիր հիշում է մի քանի հայտնի բանաստեղծություն:*

*«Ամենագետը» խաղի համար բավական է իմանալ մեկ կամ երկու քառյակ որևէ բանաստեղծությունից: Պետք է այդ բանաստեղծությունները տարբեր հեղինակների գործեր լինեն: Խաղացողներից մեկը ընտրվում է «ամենագետ»: Նա նստում է աթոռին, մյուսները հերթով մոտենում են նրան և ասում մի քառյակ որևէ բանաստեղծությունից: Ամենագետը պետք է գտնի յուրաքանչյուր բանաստեղծության հեղինակի անունը: Ամեն անգամ ամենագետի և նրան մոտեցող խաղացողի միջև տեղի է ունենում այսպիսի խոսակցություն.*

*— Բարև՛, ամենագետ:*

*— Բարև՛, իսկ դու ո՞վ ես:*

*— Ես բանաստեղծ եմ:*

*— Բանաստե՞ղծ, ի՞նչ բանաստեղծ:*

*— Ահա այսպիսի:*

Կարդա՛, ա՛յ իմ խելոք մանուկ,
Կարդա՛, գրի՛ր, տարին բոլոր,
Կարդացողի խելքն է կտրուկ,
Միտքը՝ պայծառ ու լուսավոր:

*— Գտա՛, գտա՛,— ասում է ամենագետը,— Ծատուրյան:*

*Նրան է մոտենում հաջորդ խաղացողը և ասում.*

Արի՛, գութան, վարի՛, գութան,
Օրն եկել է, ճաշ դառել,
Առը շուռ տուր, խոփիդ ղուրբան,
Օրհնյալ է աստված, հորովե՜լ:

*— Գտա՛, Աղայան,— ասում է ամենագետը:*

*— Ո՛չ, ճիշտ չէ,— պատասխանում է խաղացողը,— ոչ թե Աղայան, այլ՝ Թումանյան:*

*Բոլոր խաղացողները շրջապատում են ամենագետին և երգում.*

*Ամենագետ, ամենագետ, սխալ ես դու,*

*Դե շուտ վե՛ր կաց, տեղդ մեզ տուր:*

*Ամենագետը իր տեղը զիջում է նրան, ում ասած քառյակի հեղինակի անունը ճիշտ չի գտել:*

*Ով ավելի երկար է մնում ամենագետի դերում, նա էլ հաղթող է դուրս գալիս:*




## ԽԱՉԲԱՌ-ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

Օգտվելով տառերից՝ հորիզոնական սյունակներում լրացրեք հետևյալ հանելուկները.

*(Հանելուկները ըստ ՄԿՐՏԻՉ ԿՈՐՅՈՒՆԻ)*

1. Հողմից ծրագ է թռչում,
   Արծվից արագ է թռչում,
   Դու դեռ տասը չհաշված՝
   Նա ողջ աշխարհն է շրջում:

2. Իր տունկը դալար,
   Կոկոնն սպիտակ,
   Դարձավ մեզ համար
   Գիրք, շոր ու տետրակ:

3. Կենդանի է տարօրինակ,
   Փորի վրա ունի մի պարկ,
   Առանց թելի կարված գրպան,
   Իր ձագերին բնակարան:

4. Տուն է շինում շատ շքեղ,
   Չի գործածում փայտ ու մեխ,
   Եվ իր շինած տնակում
   Դուռն իր վրա է փակում:

5. Ո՞ր թռչունն է երկարավիզ,
   Որ չի թռչում, ման է գալիս,
   Ձիուց արագ վազել գիտի,
   Բնակիչն է անապատի:

6. Ի՞նչ թռչուն է գույնզգույն,
   Որ կրկնում է մեզ իսկույն:

7. Կլոր է, սիսեռ չի,
   Թռչում է, գնդակ չի,
   Ջրի մեջ ջուր է նա,
   Սառույցին քույր է նա:

8. Սերմ ցանեցի,
   Թել հնձեցի:

9. Իմ ճամփան անվերջ
   Երգով եմ գնում,
   Ամբողջ տարվա մեջ
   Ձմեռն եմ քնում:

10. Փետուրները որքան շքեղ,
    Տոտիկները այնքան տգեղ:

*Կազմեց Վ. ԳԱՍՊԱՐՅԱՆ*



